# ՍԻՐԵԼԻ ՀԵՐՈՍ

ՀԱՍԱՆ ԽԱՆԻ ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Կազմեց

Գ Ա Մ Ա Լ Ե Ա Ն Ց Ս.

---

ԹԻՖԼԻՍ
Էլեկտրաշարժ տպարան «ՀԵՐՄԷՍ» ընկ., Մադաթեանի փ. 15.
1905 (94)

# ՍԻՐԵԼԻ ՀԵՐՈՍ

## ՀԱՍԱՆ ԽԱՆԻ ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

1908.

Կազմեց


ՔԱՄԱԼԵԱՆՑ Ս.



ԹԻՖԼԻՍ

Էլեկտրաշարժ տպարան «ՀԵՐՄԷՍ» ընկեր., Մադաթեան փողոց 15;

1905 (94)

# ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ

Հայ աշխարհիկ գրականութեան մէջ չըկայ աւելի անուանի երկ, քան մեր անմահ հեղինակի «Ողբը», բայց եւ չկայ նոյնպէս մի ուրիշ երկ, որ ծայրէ ի ծայր աւելի քիչ կարդացուած լինի, քան այդ հրաշունչ աշխատութիւնը: Ժողովուրդը վերջերս սկսեց ճանաչել ու սիրել «Ասլան բալասի» թատրոնական ներկայացումների միջոցով: Հայ տղան ու աղջիկն էլ հետաքրքրուելով «սիրելի հերոսի» վիճակով, վերցնում են հոյակապ բնագիրը ձեռները, որ պատմութիւնը մանրամասն իմանան. աւա՜ղ, առաջին երեսներում մնում են տխրադէմ կանգնած, որովհետեւ ընթերցանութիւնը առաջ չի գնում: Երեւի շատ հասակաւորներ էլ այդ բանը փորձած կը լինեն: Բայց մեծանուն հեղինակի սրտի մուրազը իսկապէս այն էր, որ իր գրածը շատերը կարդան, իրան շատերը յիշեն:

Հէնց այդ մտքով վերցրի նրա «սիրելի հերոսը», նրա մասին գրածները իրար յարմարեցնելով կազմեցի այս գրքոյկը, որ հայ պատանեկութիւնը կարդայ եւ նրան միշտ «Ողորմի՜» տայ:

Իմ քաշած նեղութեան համար ինձ այդ վարձի կէսն էլ բաւական է:

1905 թ. Ապրիլ
Թիֆլիս.

Գ. Ս.

## Ա.

182* թուականի բարեկենդանն էր։ Ձիւնն եկել, դիզուել, Քանաքեռի սար ու ձորը բռնել էր. պարզկայ դիշերը այնպէս էր գետինը սառեցրել, որ ամեն մէկ ոտ կոխելիս ձիւնը հազար տեղից տրաք տրաքում, ճքճքում էր։ Ամեն մէկ ծառի ճղներից, ամեն մէկ տան ցեքից հազար տեսակ սառցի լուլայ, հազար տեսակ ձնի քուլայ կախ էր եզել ու իրար վրայ ցից ցից սառել։ Նայողը հէնց կիմանար, սար ու ձոր կամ նոր էր ծաղկել կամ նոր ծերացել։ Թռչուն, գազան, սողուն՝ որը փայտ դառել, այստեղ այնտեղ վէր էր ընկել. որն էլ վաղուց բունը մտել, ձայնը կտրել։ Առուների երեսներին սառուցը մէկ թիզ եկել, իրար վրայ գիզուել, այնպէս էր ջրի, աղբիւրի բերանին հուպ տուել, որ մօտ կանգնողը միայն նրանց խուլ ձայնն էր լսում՝ սառցի տակին տխուր տրտում քչքչալիս։

Այս խիստ ձմեռուայ օրը ազօթարանը բացուելիս տանուտէր Օհանէսի տանը քնատեղից

վեր կացան, երթիկը բաց արին, որ Աստծու լույսը ընկնի ներս։ Հասակաւորները երեսները լուացան, խաչ հանելով իրար «բարի լոյս» մաղթեցին, առանց երեխանցը թարժաժ անելու ամեն մէկը գնաց իւր բանին։

Մարդիք միրուքները սանդրելով, պառաւ կնանիք չարսաւը կռնատակերին կամաց կամաց դուրս ելան, հարևան կնանոնց հետ քիթ քթի տուած փսփսալէ, քոշերով կռրփ կռրփալէ գնացին ժամ։ Այնտեղ տէրտէր, տիրացու ժամն սկսել էին. ժողովուրդը ծունր էր գնում կամ նստում շարական երգուելիս։ Ծեր ժամկոչը կամ մոմի ծայրն էր կտրում կամ կանթեղներին լոյս տալիս։

Տան երիտասարդ տղէքը այլ և ամառուայ պէս հնձելու, կալ կասելու, դարման կրելու հոգս չունէին. ճլրմկոտալով աչքները ճմբռեցին ու քնաթաթախ մտան դուռը, որ տաւարին, ձիանոցը խոտ տան, տակները սրբեն, ջուրը տանեն։

Ցարդևոր հարսները օշմաղը գցած, քող ու լաչակի ծայրը խոր քաշած, ծտի պէս կուպ կուպ վեր թռան. մէկն սկսեց տունն աւլել, մէկը չախմախին տալով աբեթը կպցրեց թոնրը վառելու համար։

Աղջիկներն էլ մազները հիւսած, կարմրագագաթ պոպող դդակը դրին, ուսաշորը գցած կժերն առան, գնացին առուից ջուր բերելու։

Արեգակը քնատեղից վեր կացել, աչքը աշ-

խարքի վրայ էր գցել։ Նրա շողքերը սարերի կրծքին, դաշտերի գլխին փռուած այնպէս էին պէծին պէծին անում, պսպղում, սառցի, ձնի հետ խաղում, ծիծաղում, կանաչ կարմրին տալիս, որ հէնց իմանաս ալմաստ, զմրուխտ, հազար տեսակ անգին քարեր դաշտերի երեսին, լեռների կրծքին շաղ տուած լինէին։

Այս շողքերի մինը երթիկով տանուտէրի տունն էր ընկել ու երեխանց թարժած արել։ Քնաթաթախ վեր կացած վառ թորենի չորս կողմը բոլորել էին, անլուայ երեսով ոտները դետնին էին խփում, հարսներից հաց պահանջում, որ ուտեն։ Մեծ հարսը Նազլուն էր, խեղճը չէր իմանում ձեռը ո՞րի բերանին դնի, ո՞րի աչքը կշտացնի։ Թորենը քանի գնում թեժանում էր. կախած պղինձները ղլղլթալէ եփ էին գալիս. բայց որովհետև տան մեծերը ժամումն էին, ոչ ոք չէր համարձակւում բերանը նշխարք դնել։

Բ.

Աղասին, որ տանուտէր Օհանէսի մեծ տղէն էր, բարեկենդանի շնորքից էր թէ ինչի՞ց, հնազանդութեան փականքը թուլացրել էր. այդ օրը դեռ ժամի ութը չը լրացած սկսեց ինքն իրան թոնթորալ, բարկանալ.

—Այսպէս բան կըլինի՜, ինչ որ մեր աւեւորներն են անում. սպիտակ ձին թամքել պատմաստել եմ, այսպէս ազիզ օրը ուզում եմ գնալ

ջիրիդ խաղալու, հացի կտոր չեն տալիս, նիւթ առնեմ, ձիու քամակն ընկնեմ, ընկեր տղերանց հետ գնամ, քէֆս անցկացնեմ։ Կուզես բարկացիր, կուզես սառը ջուր խմիր, այս ծերերի փոյթը չի. այնքան մտիկ ես անելու, որ ժամն արձակուի, ապա թէ աչքդ բան տեսնի։

—Ի՞նչ է պատահել քեզ, իմ աչքի լոյս, խօսեց Նազլուն նրան մօտենալով. քիչ էլ համբերիր, հոգէս որտեղ որ է, ժամը կարձակուի։ Տարին չորս անգամ սրբութիւն ես առնում, ամեն Զատկի մատաղի ընկեր դառնում, խունկ ու մոմ վառում, հիմի ժամւորների դէմ այդպէս լեզու բանացնում։ Տան փոքրերը քեզանից ի՞նչ են սովորելու։

—Նազլու ջան, շատ լաւ ես խրատում, պատասխանեց Ազատին, ոչ բարեկենդան օրերը այսպէս կարճ պէտք է լինէին, ոչ էլ ժամերը այսքան երկար։ Ա՛խր ընկեր տղէքը ձին ու սապքը պատրաստ ինձ ձեռով են անում, կանչում, Աստուած վեր կունի՛. նրանք գնան, ես մնամ։ Այսքան տրտունջ անելս դրա համար է, թէ չէ ո՞վ է տեսել ինձ այս հանդի խօսելիս։ Այս հասակը հասել եմ, հօրն ու մօրս առաջ ինչպէս անմեղ դառը. չեմ թողել, որ նրանց բերանից թթու խօսք լսուի։ Այսօր ինքս էլ չեմ գիտում, ի՞նչ է դալու գլուխս, արի՛նս եռ է գալիս, ոտներիս տակը այրւում է, կարելի է այսօրուայ ջիրիդը շատ թունդ է լինելու։ Ա՛խ, ուր

էր թէ ժամը շուտ արձակուէր։

—Տղամարդ ես, քիչ էլ համբերիր, յորդորեց Նազլուն, հարսները գոմի սաքուն մաքրել սարքել են, գիւղի իշխանները այսօր այստեղ են կանչուած, գնա տես, խալիչէքը փռած, բուխարին վառած, դուրս ու ներսը ալած ինչ գեղեցիկ է երևալու աչքիդ։ Ողջ բարեկենդանը, ինչպէս սովորութիւն է, օրահերթով մէկ իշխանի տան պէտք է ուրախութիւն անեն։

—Գլխիս դայլի աւետարան մի կարդալ, Նազլու, այսօր սասծներդ ղուղս չեն մտնում, սպասիր տեսնեմ, կտրից ծառան ինչ լուր է տալիս։

Ազասին կտրանը մարդ էր կանգնացրել, որ նայի թէ ժամը երբ դուրս կը գայ, որ իրան շուտ տեղեկացնի։ Սրահում անհամբեր ման ու էր անում, ծառան ափալ-թափալ ներս վազեց.

—Ա՛զա, ժամը արձակուեց, կնանիքը սպիտակ չարսաւների մէջ փաթաթուած, հորէն բադերի պէս ճօրօրալով դալիս են։

—Է՛հ, Աստծուն հազար փառք, ժպտալով պատասխանեց Ազասին ու լուռ համբերեց մինչև հացի ու ուտելեղէնի դռները բացուեցին, ամեն բարիքից առատ բաժին դրին, որ տանեցիք վայելեն։ Ազասին սեղանին մօտենալով համ ուտում էր, համ քթի տակ փնթփնթում. «Աստուած ձեր գլխին խառով չը կենայ, այսօր հոգիս հանեցիք, քիչ ինձ հասցրիք»։ Այս խօսքերը ոչ մայրն իմա-

ցաւ, ոչ տատը. մի քանի կտոր բան բերանը գցեց ու մինչև հիւրերը տուն կը գային, նա փասափուսէն քաշեց, դուրս թռաւ։ Ջին կարծես իրան փառք էր համարում, որ այնպէս նստոզ ունէր. տոն սապանդակին առաւ թէ չէ, մէջքը կռացրեց ու սկսեց գլուխը խաղացնել, սմբակները գետնին խփել, խրրխընջալ ու փռընչալով փախս առնել։

Գ.

Աղասին հնազանդ որդի էր տանը. բայց փոքրուց նրա բարկութիւնը նրա վրայ էր գալիս, որ ծնողները ինչ անում էին, խելքումը չէին նստացնում, թէ բանի զօրութիւնը ի՞նչ է։ Բարեպաշտութեան ու սրտի ազնւութեան հօ խօսք չկար. երբ հանդն էր դուրս գալիս, նրա բերքն ու պտուղը, դաշտերի ծառն ու ծաղիկը, երկնքի պայծառ արեգակի, լուսնի, աստղերի լոյսը տեսնելիս հոգին վերանում էր, խելքը թռչում, շատ անգամ աչքերը ծով դառած տեղն ու տեղը մընում էր կանգնած, հէնց իմանում էր թէ իրան դըրախտը տարան։ Ձեռները տարածում էր, գըլուխը բաց, երեսը մէկ երկինքը, մէկ երկրի վրայ գցում, հոգոց հանում ու ցանկանում էր որ կանչի. «Ա՛խ, զօրքիդ մատաղ, Աստուած, ո՞վ ես դու, ո՞վ, որ այսքան բարիքը ստեղծել ես մեզ համար։ Ինչո՞ւ չես մէկ օր քո սուրբ երեսը մեզ ցոյց տալիս, որ ոտներդ ընկնենք, մեր սիրտը, մեր հոգին քեզ մատաղ տանք։ Թէ ասեմ՝ երկիրն

# ՍԻՐԵԼԻ ՀԵՐՈՍ

## ՀԱՍԱՆ ԽԱՆԻ ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Կազմեց

ՔԱՄԱԼԵԱՆՑ Ս.

ԹԻՖԼԻՍ
Էլեկտրաշարժ տպարան «ՀԵՐՄԷՍ» ընկեր., Մադաթեան փողոց 15;
1905 (94)

# ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ

Հայ աշխարհիկ գրականութեան մէջ չըկայ աւելի անուանի երկ, քան մեր անմահ հեղինակի «Ողբը», բայց եւ չկայ նոյնպէս մի ուրիշ երկ, որ ծայրէ ի ծայր աւելի քիչ կարդացուած լինի, քան այդ հրաշունչ աշխատութիւնը: Ժողովուրդը վերջերս սկսեց ճանաչել ու սիրել «Ասլան բալասի» թատրոնական ներկայացումների միջոցով: Հայ տղան ու աղջիկն էլ հետաքրքրուելով «սիրելի հերոսի» վիճակով, վերցնում են հոյակապ բնագիրը ձեռները, որ պատմութիւնը մանրամասն իմանան. աւա՜ղ, առաջին երեսներում մնում են տխրադէմ կանգնած, որովհետեւ ընթերցանութիւնը առաջ չի գնում: Երեւի շատ հասակաւորներ էլ այդ բանը փորձած կը լինեն: Բայց մեծանուն հեղինակի սրտի մուրազը իսկապէս այն էր, որ իւր գրածը շատերը կարդան, իրան շատերը յիշեն:

Հէնց այդ մտքով վերցրի նրա «սիրելի հերոսը», նրա մասին գրածները իրար յարմարեցնելով կազմեցի այս գրքոյկը, որ հայ պատանեկութիւնը կարդայ եւ նրան միշտ «Ողորմի՜» ասի:

Իմ քաշած նեղութեան համար ինձ այդ վարձի կէսն էլ բաւական է:

1905 թ. Ապրիլ
Թիֆլիս.

Գ. Մ.

## Ա.

182* թուականի բարեկենդանն էր։ Ձիւնն եկել, դիզուել, Քանաքեռի սար ու ձորը բռնել էր. պարզըկայ գիշերը այնպէս էր գետինը սառցրել, որ ամեն մէկ ոտ կոխելիս ձիւնը հազար տեղից տրաք տրաքում, ճքճքում էր։ Ամեն մէկ ծառի ճղներից, ամեն մէկ տան ցւքից հազար տեսակ սառցի լուլայ, հազար տեսակ ձնի քուլայ կախ էր եղել ու իրար վրայ ցից ցից սառել։ Նայողը հէնց կիմանար, սար ու ձոր կամ նոր էր ծաղկել կամ նոր ծերացել։ Թռչուն, գազան, սողուն՝ որը փայտ դառել, այստեղ այնտեղ վէր էր ընկել. որն էլ վաղուց բունը մտել, ձայնը կտրել։ Առուների երեսներին սառուցը մէկ թիզ եկել, իրար վրայ գիզուել, այնպէս էր ջրի, աղբիւրի բերանին հուպ տուել, որ մօտ կանգնողը միայն նրանց խուլ ձայնն էր լսում՝ սառցի տակին տխուր տրտում քլքլալիս։

Այս խիստ ձմեռուայ օրը աղօթարանը բացուելիս տանուտէր Օհանէսի տանը քնատեղից

վեր կացան, երթիկը բաց արին, որ Աստծու լոյսը ընկնի ներս։ Հասակաւորները երեսները լուացան, խաչ հանելով իրար «բարի լոյս» մաղթեցին, առանց երեխանցը թարժած անելու ամեն մեկը գնաց իր բանին։

Մարգիք միրուքները սանդրելով, պառաւ կնանիք չարսաւը կռնատակերին կամաց կամաց դուրս ելան, հարևան կնանոնց հետ քիթ քթի տուած փսփսալէ, քոշերով կրփ կրփալէ գնացին ժամ։ Այնտեղ տէրտէր, տիրացու ժամն սկսել էին. ժողովուրդը ծունր էր դնում կամ նստում շարական երգուելիս։ Ժիր ժամկոչը կամ մոմի ծայրն էր կտրում կամ կանթեղներին լոյս տալիս։

Տան երիտասարդ տղէքը այլ ևս ամառուայ պէս հնձելու, կալ կասելու, գարման կրելու հոգս չունէին. ճլըմկոտալով աչքները ճմռեցին ու քնաթաթախ մտան գոմը, որ տաւարին, ձիանոնցը խոտ տան, տակները սրբեն, ջուրը տանեն։

Ցարդևոր հարսները օշմաղը գցած, քող ու լաչակի ծայրը խոռ քաշած, ծտի պէս կուպ կուպ վեր թռան. մէկն սկսեց տունն աւլել, մէկը չախմախին տալով աբեթը կպցրեց թոնրը վառելու համար։

Աղջիկներն էլ մազները հիւսած, կարմրագաղաթ պոպոզ գդակը դրին, ուսաշորը դցած կժերն առան, գնացին առուից ջուր բերելու։

Արեգակը քնատեղից վեր կացել, աչքը աշ-

խարքի վրայ էր գցել։ Նրա շողքերը սարերի կրծքին, դաշտերի գլխին փռուած այնպէս էին պէծին պէծին անում, պսպղում, սառցի, ձնի հետ խաղում, ծիծաղում, կանաչ կարմրին տալիս, որ հէնց իմանաս ալմաստ, զմրուխտ, հազար տեսակ անգին քարեր դաշտերի երեսին, լեռների կրծքին շաղ տուած լինէին։

Այս շողքերի մինը երթիկով տանուտէրի տունն էր ընկել ու երեխանց թարժաժ արել։ Քնաթաթախ վեր կացած վառ թոնրի չորս կողմը բոլորել էին, անլուայ երեսով ոտները գետնին էին խփում, հարսներից հաց պահանջում, որ ուտեն։ Մեծ հարսը Նազլուն էր, խեղճը չէր իմանում ձեռը որի բերանին դնի, որի աչքը կշտացնի։ Թոնրը քանի գնում թեժանում էր. կախած պղինձները ղըլղըլթալէ եփ էին գալիս. բայց որովհետև տան մեծերը ժամումն էին, ոչ ոք չէր համարձակւում բերանը նշխարք դնել։

Բ.

Աղասին, որ տանուտէր Օհանէսի մեծ տղէն էր, բարեկենդանի շնորքից էր թէ ինչի՞ց, հնազանդութեան փականքը թուլացրել էր. այդ օրը դեռ ժամի ութը չը լրացած սկսեց ինքն իրան թոնթորալ, բարկանալ.

—Այսպէս բան կըլինի՞, ինչ որ մեր ալեւորներն են անում. սպիտակ ձին թամքել պատմաստել եմ, այսպէս ազիզ օրը ուզում եմ գնալ

ջիրիդ խաղալու, հացի կտոր չեն տալիս, նիւթ առնեմ, ձիու քամակն ընկնեմ, ընկեր տղերանց հետ գնամ, քէֆս անցկացնեմ։ Կուզես բարկացիր, կուզես սառը ջուր խմիր, այս ծերերի փոյթը չի. այնքան մտիկ ես անելու, որ ժամն արձակուի, ապա թէ աչքդ բան տեսնի։

—Ի՞նչ է պատահել քեզ, իմ աչքի լոյս, խօսեց Նազլուն նրան մօտենալով. քիչ էլ համբերիր, հորէս որտեղ որ է, ժամը կարձակուի։ Տարին չորս անգամ սրբութիւն ես առնում, ամեն Զատկի մատաղի ընկեր դառնում, խունկ ու մոմ վառում, հիմի ժամւորների դէմ այդպէս լեզու բանացնո՞ւմ։ Տան փոքրերը քեզանից ի՞նչ են սովորելու։

—Նազլու ջան, շատ լաւ ես խրատում, պատասխանեց Աղասին, ոչ բարեկենդան օրերը այսպէս կարճ պէտք է լինէին, ոչ էլ ժամերը այսքան երկար։ Ա՛խր ընկեր տղէքը ձին ու սապոքը պատրաստ ինձ ձեռով են անում, կանչում, Աստուած վեր կունի՞. Նրանք գնան, ես մնամ։ Այսքան տրտունջ անելս դրա համար է, թէ չէ ո՞վ է տեսել ինձ այս հանգի խօսելիս։ Այս հասակը հասել եմ, հօրն ու մօրս առաջ ինչպէս անմեղ գառը. չեմ թողել, որ նրանց բերանից թթու խօսք լսուի։ Այսօր ինքս էլ չեմ գիտում, ի՞նչ է գալու գլուխս, արիւնս եռ է գալիս, ոտներիս տակը այրւում է, կարելի է այսօրուայ ջիրիդը շատ թունդ է լինելու։ Ա՛խ, ո՞ւր

էր թէ ժամը շուտ արձակուէր։

—Տղամարդ ես, քիչ էլ համբերիր, յորդորեց Նազլուն, հարսները գոմի սաքուն մաքրել սարքել են, գիւղի իշխանները այսօր այստեղ են կանչուած, գնա տես, խալիչէքը փռած, բուխարին վառած, գուրս ու ներսը տալած ինչ գեղեցիկ է երևալու աչքիդ։ Ողջ բարեկենդանը, ինչպէս սովորութիւն է, օրահերթով մէկ իշխանի տան պէտք է ուրախութիւն անեն։

—Գլխիս գայլի աւետարան մի՛ կարդալ, Նա՛զլու, այսօր ասածներդ ղուզս չեն մտնում, սպասիր տեսնեմ. կտրից ծառան ինչ լուր է տալիս։

Աղասին կտրանը մարդ էր կանգնացրել, որ նայի թէ ժամը երբ դուրս կը գայ, որ իրան շուտ տեղեկացնի։ Սրահում անհամբեր ման ու էր անում, ծառան ափալ-թափալ ներս վազեց.

—Ա՛ղա, ժամը արձակուեց, կնանիքը սպիտակ չարսաւների մէջ փաթաթուած, հորէն բադերի պէս ճորորալով գալիս են։

—Է՛հ, Աստծուն հազար փա՜ռք, ժպտալով պատասխանեց Աղասին ու լուռ համբերեց մինչև հացի ու ուտելեղէնի գռները բացուեցին, ամեն բարիքից առատ բաժին դրին, որ տանեցիք վայելեն։ Աղասին սեղանին մօտենալով համ ուտում էր, համ քթի տակ փնթփնթում. «Աստուած ձեր գլխին խռով չը կենայ, այսօր հոդիս հանեցիք, ջին ինձ հասցրիք»։ Այս խօսքերը ոչ մայրն իմա-

ցաւ, ոչ տատը. մի քանի կտոր բան բերանը գցեց ու մինչև հիւրերը տուն կը գային, նա փասափուսէն քաշեց, դուրս թռաւ։ Ջին կարծես իրան փառք էր համարում, որ այնպէս նստող ունէր. ոտն ասպանդակին առաւ թէ չէ, մէջքը կռացրեց ու սկսեց գլուխը խաղացնել, սմբակները գետնին խփել, խըրխընջալ ու փռընչալով փախս առնել։

## Գ.

Աղասին հնազանդ որդի էր տանը. բայց փոքրուց նրա բարկութիւնը նրա վրայ էր գալիս, որ ծնողները ինչ անում էին, խելքումը չէին նստացնում, թէ բանի զօրութիւնը ի՞նչ է։ Բարեպաշտութեան ու սրտի ազնւութեան հօ խօսք չկար. երբ հանդն էր դուրս գալիս, նրա բերքն ու պտուղը, գաշտերի ծառն ու ծաղիկը, երկնքի պայծառ արեգակի, լուսնի, աստղերի լոյսը տեսնելիս հոգին վերանում էր, խելքը թռչում, շատ անգամ աչքերը ծով գառած տեղն ու տեղը մընում էր կանգնած, հէնց իմանում էր թէ իրան դրախտը տարան։ Ջեռները տարածում էր, գըլուխը բաց, երեսը մէկ երկինքը, մէկ երկրի վրայ գցում, հոգոց հանում ու ցանկանում էր որ կանչի. «Ա՜խ, զօրքիդ մատաղ, Աստուած, ո՞վ ես դու, ո՞վ, որ այսքան բարիքը ստեղծել ես մեզ համար։ Ինչո՞ւ չես մէկ օր քո սուրբ երեսը մեզ ցոյց տալիս, որ ոտներդ ընկնենք, մեր սիրտը, մեր հոգին քեզ մատաղ տանք։ Թէ ասեմ՝ երկիրն

է մենակ գեղեցիկ հազար ծաղիկներով, բույսերով զարդարուած, հապա երկինքն ո՛ւր թողեմ, որ ցերեկն ինձ լոյս է տալիս, հանգիս պտուղը հասցնում, գիշերը մութն իմ աչքից հեռացնում ու այնպէս վրանի նման գլխավերևս կանգնած անձրև արև տալիս, որ ես ապրեմ, որդիքս պահպանեմ, աշխարքին պէտք գամ. որ մեռած միջոցին գան գերեզմանիս վրայ կանգնեն, մէկ դարգակ ողորմի ասեն։

Ա՜խ, երկնային թագաւոր Աստուած, քանի աչքս բաց եմ անում, այս քո արած բաները տեսնում, սիրտս կրակ է դառնում, աչքս ծով· բերանս լուում, մնում եմ տաքացած, ջեռուցած, բայց ոչ այս կրակն է ինձ այրում, ոչ այս ջուրն ինձ խեղդում։ Աչքս մոլորուած այս թուփից այն թուփը, այս սարից այն սարն է ընկնում, ծառի տակին ասես, սարի գլխին ասես՝ մտիկ անելով աչքս շաղուում ջուր է կտրում։ Հէնց գիտենաս մէկ ձայն, մէկ թև, մէկ աներևոյթ հոգի, տերևները խշշալիս, թռչունը թռչելիս, աղբիւրը քչքչալիս, տոխակը երգելիս, հովը փչելիս, շաղը երեսիս թափելիս, ամպը գոռալիս, անձրևը գալիս, ինձ ձայն լինի տալիս, ինձ ձեռով լինի անում, ինձ վրա խնդում, թէ՝ վայելիր այս բաները, հողածին մարդ, բարի կաց, բարութիւն արա, Արարչից մեծութիւնն ու խնամքը ճանաչիր. ծառի պէս պտուղ տուր, ծաղկի պէս հոտ· սարի պէս աղբիւր, դաշտի պէս բերք, երկրի

պէս հաց, երկնքի պէս լոյս։ Վայելիր Աստծու բարութիւնը, ուրիշին էլ մաս տուր։ Աղքատ տեսնելիս ուտացրու, կշտացրու. Թռչունը վրովդ անցկենալիս կանչիր, կուտ տուր, դու առատ ձեռն ունեցիր, որ առատ առնես ու բաղդաւոր լինես»։

Այս զգացմունքի տէրն էր Աղասին. այդ պատճառով բոլոր գիւղացիք նրա արևովն էին խնդում, նրա գլխով երդում ուտում։ Ամենի աչքը նրա վրայ էր, նրան էր գովում ու օրհնում։ Մէկին փորձանք պատահելիս նա էր գլուխը ետ դնում, բերանի պատառը հանում, ուրիշին ուտացնում։ Տանուտէրի տղայ էր, աղքատի ու անճարի ընկեր։ Շատ հայր ու մայր երանի էին տալիս նրա ծնողներին, որ այնպէս զաւակ ունէին։ Նրա սուրահի բոյը, նրա թուխ թուխ աչքերը, նրա աննման գեղեցիկ պատկերը, նրա անուշ լեզուն մարդու խելք էին տանում։ Սազը ձեռը առածին պէս քարին, փայտին շունչ հոգի էր տալիս։ Ուղիղ է, արևը երեսն այրել, գոյնը փախցրել էր, բայց ծիծաղելիս, աչքը ունքը բաց անելիս, հէնց իմանաս վարդ է բաց լինում, երեսից լոյս վէր թափում։ Նրա թուանքի գնդակը դարդակ չէր անցնում։ Այնքան ուժով էր, ձեռը տղամարդի գոտիկը գցելիս հաւի ճուտի պէս բարձրացնում էր. հինգ մարդ հազիւ էին նրա կուռը ոլորում. մէկ թուր խփելով եզան վիզը դուրս էր կտրում։ Շատ անգամ քսան թշնամու հէնց թրի ետքով էր հալածել. Թուրքերը նրա

անունը լսելիս լեղապատառ էին լինում. Նրա ձայնն իմանալիս կռուի միջոցին անյայտանում էին։ Աւելի անունը դրել էին Ասլան բալասի։

Դ.

Աղասու ընկերները մէկ տեղ թոփ եղած նրան էին սպասում այս առաւօտ. իրանց ու գլխու չէին համարձակւում քէֆն սկսել, որովհետև պատուելի իշխանները ժամից դուրս եկած գիւղամէջում տէրողորմեան քաշելով ղրոյց էին անում։ Սրանք վերջապէս շարժուեցին տեղներից, տէրտէրը մէջն առած ճամբայ ընկան դէպի տանուտէր Օհանէսի տուն։ Առաջներից կնալով ձայն էր տալիս մէկ աչքանի գզիր Կոտանը։

—Գիւղի սեծամեծները գալիս են, տեղ տուէք, ճամբայ բաց արէք...

Թագաւորն էլ այնպէս ուռած, փքուած իւր պալատը չէր մտնիլ, ինչպէս մեր իշխանները մտնում էին գոմի օդան։ Շարքով նստոտեցին, դամ քաշեցին, պէտք էր տեսնել թէ ինչպէս են նրանք գտակները կոտրել, աջ ականջի վրայ թեքել. իրար բռնոթի համեցէք անելով, իրանց մանկութիւնը միտները բերելով հանաքներ անում, հրճւում, աթարի դեզի պէս փուլ գալիս. ծիծաղից շատի մէջքի իլիկը քիչ էր մնում կոտրուի։

Ուղիղ է, շատի հագին տրեխ էր, գուլբա էլ չունէր, որ ոտը ծածկի. շատի չուխի վրայ

հարիւր կարկատան կար, շատն այնքան ծեր էր. բերնում երկու հատ ատամ էլ չունէր, բայց ինչ կանես, որ տունն ու մարանը հազար բարութիւնով լիք տրաքում էին ու Աստծու հոգի կար մէջներում. օձի ձուն էր պակաս նրանց տանից։ Գինին տճերով շարած, ամբարը հացով լիքը, կըթի կուժն ու կումէշները հորթ ու ձագ տակներին, նժոյգ ձին գոմում, գութանը դռանը սարքին։ Կարասներով կողակ, կճուճներով պանիր ու տհալ, աքաշներով զոխ, բոխ. բղուղներով եղ ու կարագ, տկերով մոթալ.—ծո՜վ ասա, պրծիր, էլ ինչ տուն։ Շատ անգամ որ եկեղեցում օտար ոքմին տեսնէին, ամեն մինը դռանը կսպասէր, որ առաջին անգամ ինքը խնդրէր, տուն տանէր։

—Բա՛ղդ, բա՛ղդ, այս է, ձեզ մատաղ, բացականչեց խնամի Յարութիւնը լիք սուփրին նայելով, փողի բարաքեաթին էլ նալլաթ, նրա կտրողին էլ, ոչ ուտել է լինում, ոչ հագնել, այսօր ջէբդ լցնես, էգուց պէտք է մատդ լըպըստես, փող ունեցողը ոչ գիշերը քուն ունի, ոչ ցերեկը հանգիստ։

—Շատ արդար խօսք է, խնամի, հաւանութիւն տուեց տանուտէրը, փողը որ կայ, ժանգ է, ձեռի կեղտ է, այսօր կայ, վաղն Աստծով մըխիթարուես։ Օջաղս լիք լինի, տանս առատութիւն, որդիքս ողջ անփաս. թո՛ղ օրը հարիւր մարդ մտնի, հարիւր մարգ դուրս գայ, ինչ եմ հոգում, հացն Աստծունն է, ես էլ հետը, ո՛վ հասնի,

թող ուտի։

—Հաղէր ես լաւն ասեմ, վրայ բերեց հարեւանը, փողի երես ճանաչողը ոչ հոգի ունի և ոչ հաւատ։ Փող ու հող մի բան է։ Իմ իմանալով իւր տնկած ծառի տակին քնելը, իւր խնամքով հասցրած պտուղ ուտելը աշխարք աժի։ Թէկուզ փողի համն առած, թէկուզ իւր միսը կերած, մի հաշիւ է։ Գիւղացի մարդ եմ, իմ գլխի ու կամքի տէրը, նոր չեմ հագնիլ, հին կը հագնեմ, ձեռս ով է բռնում, ով է գլուխս ծեծում, թէ զառ ու զումաշ հագի։

—Այս հացը վկայ, խօսեց սուփրի ծայրի ոքմինը, քաղաք որ մտնում եմ, հէնց իմանաս աշխարքը սով ընկած լինի, էլ ոչ սէր կայ, ոչ բարութիւն։ Հացն ու ջուրն էլ որ փողով լինեն ծախում, առնում, էլ ում գուռը գնաս, ում ձեռըգ դէմ անես։ Պարտական լինեմ գատաստանին, թէ մի ծեզ տան, որ աչքդ գնես։ Տէրտէր, տնանուտէր, հաւատացէք, տաս տարի էլ մարդ իւր սիրելու գռանը շլինք ծռի, մէկն էլ է նրան տուն չի կանչիլ, մէկ սառ ջուր խմացնիլ։ Ասած է՝ հողածին մարդը ինքը պէտք է լաւութիւն անի, որ Աստուած էլ նրա բանն աջողի։

—Հա՛, օրհնեալ որդիք, վրայ բերեց տէրտէրը, ասածներդ այնպէս արդար ու ճշմարիտ են, ոնց որ Աւետարանի մէջ դրած։ Էլի Աստուած օրհնի մեր գիւղացու հողն ու ջուրը, նրա կուռը ուժով լինի, իւր քրտինքով իւր հացն ուտի։ Էլի թէ

հոգի կայ, հաւատ կայ, մեզանում է, գիւղական ժողովրդի մէջ, եկէք իրար հետ սիրով կեր ու խումը շարունակենք, իրար օգնենք, իրար արեւով խնդանք, որ մեռնելուց ետ մի ողորմի լսելու արժանանանք։ Մարդ ինչ որ անի, այն իւր առաջը կը դայ. հաւատացած կացէք՝ լաւ լինեմ, լաւ կասեն, վատ լինեմ, վատ։ Հարիւր տարի կըլինի, լուսահոգի Աբովը մեր գիւղում մեռել է, տեսնում էք, Նրա ողորմին հա՛ կայ, հա՛ կայ։

—Փառոց կենաս, կարգ ու պատարագի լինես, տէրտէր, ձայն տուին ամենը միաբերան. ի՞նչ պէտք է տանենք այս փուչ աշխարքից, դարդակ եկել ենք, դաբդակ էլ գնալու ենք։ Հէնց ասենք, այնքան շէնացայ, աշխարքի տէր էլ դառայ, ինչ մխիթարութիւն գրանից. վերջ ի վերջոյ հողը չեմ մտնելո՞ւ։ Այդքան բանից իմ սեփհականութիւնն է մէկ բուռ հող, մէկ երկու գազ կտաւ։ Ի՞նչ կասես, տանուտէր ջան, թէ սխալ ենք ասում, ականջներս քաշիր, քո ժողովուրդն ենք։

—Ա՛յ աչքի լոյս քէնդխուդէք, այդ ի՞նչ խօսք է, որ ասում էք, ո՞վ իրաւունք ունի ձեր ականջից քաշելու կամ բերաններիդ խփելու։ Ուղիղ է՝ վարպետի, վարդապետի մօտ չէք մեծացել, բայց այնպէս խելօք զրոյցներ էք անում, հէնց իմանաք Աւետարանի կողքին դրած բաներ։

Գիւղի իշխանները այսպէս խօսելով կերակուրները անուշ արին կամաց կամաց. վերջը գառան մսով փլաւի վրայ էր, որ տէրտէրը բաժա-

կը ձեռն առաւ, օրհնեց.

— Դէ՛ լսէք խնդրուածս, սիրելի ժողովուրդ, Աստուած աշխարքիս խաղաղութիւն, թագաւորաց հաշտութիւն, քրիստոնէից ազատութիւն տայ։ Այնքան ողջ մնանք, որ մէկ օր էլ այսպէս միասին քրիստոնեայ թագաւորի ձեռի տակ նստենք, ուստրով, դստրով ուրախանանք։

— Ա՛մէն, ա՛մէն, տէ՛րտէր, ձայն տուին սեղանի ծայրերից, ամենակալ Աստուածը քու օրհնած բերանից լսի ու կատարի։ Բաւակա՛ն էր, ինչ որ անօրէնի ձեռին տանջուեցինք։

— Հա՛, տանուտէր, շարունակեց տէրտէրը, տունդ շէն մնայ, ապրին եղբայրներդ, որդիքդ, մեր գիւղի թագն ես, մեր աչքի ծաղիկը. հայր Աբրահամի օրհնութիւնը լինի այս տան մեծ ու փոքրի, արականի ու իգականի վրայ։

— Շնորհակալ եմ, տէ՛րտէր, գի՛ւղի իշխաններ, ձեզանով շնորհաւոր բարեկենդան, Աստծով Զատկին էլ իրար հետ ուրախ կարմիր ձու կըճպենք։ Ձեռներդ ետ մի՛ք քաշիլ, վայելեցէք, էգուց, էլօր մեծ պասը կը գայ, ոտները երթկից կախ կանի. այն ժամանակ հա՛ կաց, հա՛ բազկաթըթու կեր։ Հաւասարական ո՛ղջ լինէք, ո՛ւրախ։ Տէր Աստուած, քեղ փառք, քու ստեղծածն ենք, մեզ չը կորցնես, Դու .ռուս թագաւորի թուրը կտրուկ անես, անօրէնի ձեռից նրա միջոցով ազատուենք։

Այսպէս հանգիստ տանգտանէ կեր ու խում

էին անում գիւղի մեծերը, հանաքներով իրար սիրտ շահում։ Վաղուց էին կշտացել, հացը վեր քաղել տուել. մրգեր էին վայելում ու ժամանակին սպասում, որ դուրս գան ջահել տղերանց ջիրիդին մտիկ անեն։

Ե.

Արեգակը եկել երկնքի մէջտեղը բռնել էր, օրուան փուշը մի քիչ կոտրուել, տաքացել էր։ Այս միջոցին ով Քանաքեռ մտնէր, հէնց կիմանար թէ երկնքից աւետեաց ձայն է եկել, աշխարքս արքայութիւն դառել, այնքան տղամարդ, տղէք, երեխէք էին տներից դուրս եկել, փողոցներում, կտրներին քէֆ անում։ Օտար մարդը այնպէս կը կարծէր թէ այս գիւղացիք աշխարքի տէրն են, ոչ դարդ ունեն, ոչ կարիք։ Հասարակ ժողովրդից, որը կռնաբռնուկ պար էր գալիս, որը բոլորպատ նստել անուշ կերուխում անում, որը խաղ ասում, որը ծոր բռնում։ Այստեղ դուդուկն էր փչում, միւս տեղ ղարաչի կնանիք փայ բաց անում։ Մանր տղերանցից ո՛րը ձնագնդի էր տալիս, որը աչքակապուկի։

Աղասին էլ քէֆն արել, պրծել էր, ընկերները ետևից գցած եկաւ մէկ տաս ձիաւորով գիւղի միջովն անցկացաւ, որ գնայ կալերի դիւրան տեղը իւր շնորքը ցոյց տայ, ջիրիդ խաղայ։ Հէնց իմանաս՝ Թագաւորի որդի է գալիս, զէնք ու զրահը կապած, հրացանն ուսին, թուրը կողքից

կախ, ջուխտ փշտովը ու դաշոյնը գոտկումը, կանաչ մով· շալվարը, գառ կաշէն հագին, մետաքսի թաշկինակը վզին, խուճուճ թուխ գտակը գլխին կոտրել, աջ ականջի վրայ էր գցել, ոսկեթել մազերը ձախ կողմից քամու հետ խաղում, ազնիւ երեսին դիպչում կամ բկի տակովը ընկնում։ Բեխերը մետաքսի պէս ոլորել, թշի վրովը այնպէս էր տարել, որ ամեն մէկի ծայրը ականջներին էր դիպչում։

Գիւղացիք նրան տեսան թէ չէ, ծափ տուին, բարձրաձայն սկսան գովել.

Ահա եկաւ քաջ Աղասին,
Աղէգ օրին կըտայ կեանք.
Մեծ ու փոքրով քեզ ենք մնում,
Ո՞ւր ես գիւղի, թա՛գ, պա՛րծանք։

Աղնիւ երիտասարդը այսպէս պատիւ տւողներին գդակով արեց, քաղցր երեսով գլուխ տըւեց, անցկացաւ։

Կալերի ներքևը ջիրիդն սկսուեց։ Հեռուից երևում էր թէ ինչ շնորքներ էր բանացնում քաջը. ձիու ականջը մտած այնպէս էր քշում, կրակին տալիս, որ հէնց գիտես թևաւոր լինի։ Շատ անգամ ջիրիդը հեռու տեղից շպրտում, ձին չափ էր գցում, գետնից ծուլ լինելիս ձիու վրայ բռնում կամ թամքի միջին երկու ոտով կանգնում էր, այնպէս ձին չափ գցում։ Աչք պէտք է լինէր նրա տղամարդութիւնը, ռաշիդութիւնը տեսնէր, զարմանար։

—Արևիդ մատաղ, Աղասի, ասում էին Թամաշաւորները խնդում, ծափ տալիս. ափսո՜ս, մայրդ քեզանից մի հատ է բերել։

Այս ընդհանուր ցնծումի, ուրախութեան միջոցին յանկարծ հէնց իմանաս գիւղամէջում մէկ ամպ տրաքեց, կամ երկինք փուլ եկաւ. մի կըսկծալի ձայն այսպէս էր կանչում։

—Տարա՜ն, տարա՜ն, Աստուածասէրներ, մօտ եկէք, օգնեցէք, գլուխս լացէք, տունս կոխեցին, օջախս քանդեցին. ամա՜ն, հարա՜յ, դա՜թ, մադա՜թ։ Ե՛րկինք, փո՛ւլ արի, ինձ տակովը արա, ի՞նչ կը լինի։ Ձեր գդակը ձեր գլխին խռո՛վ կենայ, ի՞նչ տղամարդիկ էք, տօ, մէկ ձեռը գոնէ հասցրէք է. ի՞նչ էք քարացել, փայտացել։ Թագուհի ջան, գլխիդ մատաղ գնամ... Թագուհի... անունիդ մեռնեմ, երեսս ոտիդ տակը, Թագուհի ջան... Այդ չախմուր աչքերիդ մատաղ լինեմ, աղիզ ջան...

Այս կսկծալի ողբի հետ լաւ պարզ լսւում էր, որ մէկ տղամարդ Թուրքերէն սաստում էր. «ձայնդ կտրի, ղա՛րաչի, հէնց այս րոպէիս փորդ վէր կածեմ, սարդարի հրաման է, քու աղջիկը պէտք է քաշենք, տանենք հարեմ, ի՞նչ խօսք ունես, ի՞նչ կարողութիւն. սարդարի հրամանի առաջ սարը չի դիմանալ, դու ի՞նչ սրտի տէր ես։

Ժողովրդի գլխին ջուր մաղուեց, ամենն էլ իմացան թէ ինչ աղմուկ է. սարդարի ֆառաշները եկել էին, որ սիրուն աղջիկ քաշեն, ո՞վ

քաջասրտութիւն ունէր, որ ծպտայ։ Բարեկենդանը ամենի համար սուգ դառաւ։ Երեխէքը լալով տուն փախան, կնանիքը դողալով դռները կողպեցին ու մառանի կարասների տակ մտան կամ դարմանի ու խոտի խրձերի մէջ թագ կացան։ Գիւղը հէնց գիտենաս յանկարծ աւերուեց։ Տըղամարդկանց որը վախլուկ էր, գլուխն առաւ, կորաւ, որը մի քիչ սրտապինդ էր, զարղանգելով մօտ եկաւ ոչ թէ օգնութիւն անելու, այլ տեսնելու թէ ի՞նչ մարգիկ են եկողները, ի՞նչպէս են տանում խեղճ աղջկանը։ Սփարթնած եկան մեռելի պէս տան ցաքին շարուեցին. շատի լեզուն բերանում շաղուել փայտացել էր, շատի էլ լերդ ու թոքը ջուր կտրուել։ Սրտով ուզում էին օգնութիւն անեն, ջրատարներին ազատեն, բայց սարգարի մարդկանց դէմ ի՞նչ ոյժ բանեցնէին, չէ՞ որ իրանց թնգանօթի բերանի կապած կըգցէին։ Հարիւր հոգի այդպէս ձեռները ծոցում պատի ծայրից մտիկ էին տալիս։ Սուգ ու շիւանը ողջ գիւղը բռնել էր։ Ֆառաշները կատաղել, փրփրել էին մտիկ անողների վրայ, հրացանները շատ անգամ բռնում էին, որ վախեցնելով հեռացնեն, բայց հուշտ եղած ոչխարի պէս էլի ժողովուրդը գալիս էր, մտիկ տալիս։ Ինչ որ խեղճ ողորմելի մայրն էր անում, Աստուած ոչ նշանց տայ, քար չէր մնացել, որ գլխին չը խփի, հող չէր մնացել, որ վրէն չածի։ Ծուտը կորցրած հաւի պէս մէկ դէս էր վազում, մէկ դէն։ Այնքան ծնկներին,

գլխին խփել էր, լաց եղել, մազերը պրճոկել, երեսը չանգռել էր, որ ոչ խեղճի աչքումը լոյս էր մնացել, ոչ բերնումը լեզու։ Ճարահատ փորսող տալով, գետինը լիզելով, փառաշների ոտներով էր փաթաթւում, որ մեղք գան. անիրաւները որ կրծքին չէին խփում կամ քացով տալիս, դէն գցում, ընկնում էր երկու ձեռով աղջկայ վրայ։ Ինչ էլ անում էին վերջը, դմբուզով էին վեր հատում թէ մորակով, աղջկայ վզից պոկ չէր գալիս։

Ո՞ր մէկն ասել, ո՞ր մէկը թողել. մարդի գըլխի կրակ էր թափւում, երբ խեղճ մօր արածն ու ասածը միտն է բերում։ Թուրքերը որ թւով տաս հոգի էին, այն անօրէն տեղներով, ճշմարիտ է, բարկանում վրայ էին պրծնում, բայց մօր մորմոքուելը տեսնելով սիրտները քիչ գութ գըցեցին։ Սարդարի հրամանը անկատար թողնել չէին կարող. ճարահատուած որոշեցին մօրն էլ աղջկայ հետ տանել բերդը, իրանց պարտքից դուրս գալ, ետոյ էլ ինչ կըլինի, կըլինի։ Ծառաներին հրամայեցին, որ թամքած ձիաները մօտ բերեն, իրանք զէնք ու զրահում մտած մօտեցան որ մօրն ու աղջկանը վերցնեն։

Հէնց թշնամու ձեռը նրան գիպաւ թէ չէ, մէկ ա՜խն էր նրա հոգին, քաշեց, թուլացաւ. մինչև շէմք բերելը հաւի պէս մէկ էլ թրպրտաց ու ձայնը փորն ընկաւ, Թագուհին, աշխարքի աչք Թագուհին, անթառամ ծաղիկ, անդին աննման

Թագուհին, որ արեգակի պէս լոյս էր տալիս ու վարդի պէս փայլում, դառել էր սպիտակ կտաւ։ Այն երկնանման աչքերը, որ տեսնողի հոգին կըրակում էին, փակուել կուլ էին գնացել։ Լուսնըդէն ճակատը, թուխ թուխ ունքերը, նռնահատ թշերը, նուրբ քիթը, ոսկեցնցուղ բուկը, ամենը, ամենը սառ մարմար էին կտրուել, պապանձուել։ Մարմնի կէսը չէմքի այս կողմն էր մնացել կէսը միւս. ոսկեթել մազերի կէսը կուրծքն էր ծածկել, կէսը գետնի վրայ փռուել, քաշ ընկել, ձեռի մինը սրտի վրայ էր թուլացած, միւսը հողի վրայ տարածուած։

## Զ.

Հէնց այն է փառաշներից երկուսը ձիու վըրայ նստել տեղ էին բաց անում, որ մէկը մօրը խտտի, միւսը աղջկան առաջն առնի, որովհետև ապահով էին դարձել, որ իրանց յանձնարարութիւնը լաւ գլուխ բերին, յանկարծ մէկ թուր պսպղաց, փառաշների մէկի գլուխը գետնի վրայ ընկաւ ու սկսեց ղլվլացնել, պար գալ։ Սա դեռ ձայնը չէր կտրել, միւս ընկերն էլ նրա հացից կերաւ։ Ամեն կողմից վախկոտ հարևանները ձայն տուին.

—Աղասի ջա՜ն, մեր տունը քանդեցիր. Ա՛ղասի, ձեռդ քեզ քաշի, քու խեղճ ալևոր հօրը խըղնայի, որդով, տնով, տեղով գերի կերթանք։ Մի՛ անիլ, մի՛ լինիլ, գլխիդ, արևիդ մատաղ, քու ջի-

ւան ջանին գոնէ ափսոս եկ։ Աստուած, այս ինչ պատուհաս էր, որ մեր գլուխն եկաւ։

Բայց թնդանօթ էլ տրաքէր այդ րոպէին, Աղասին չէր իմանալ, ոչ ականջն էր իրանը, ոչ աչքը, միայն խելքն ու ձեռը լաւ իմանում էին, թէ ինչ բանի վրայ են։ Արիւնն աչքերը կոխած քաջ երիտասարդը հէնց այսպէս բանի էր ման գալիս, որ իւր ձեռի ուժը, իւր թրի շնորքը ցոյց տայ։ Ջիրիդի տեղից էր նկատել գիւղի իրար-անցով ընկնելը ու լռելը։ «Տղէրք, սրա մէջ մի բան կայ, գնանք, մեր բարեկենդանը խանգար-ուեց, փչացաւ, ասեց քաջը ու թռաւ։ Ճամբին ականջումն էր ընկել թէ ինչ է պատահել. առիւ-ծի պէս ներս ընկաւ հսկայ երիտասարդը։ Եր-կուսի գլուխը կտրելուց ետը միւսներն ուզեցին թուր հանել, քաջ Աղասին բերանը բաց արեց.

—Դժոխքի որդիք, ձեզ ո՞վ է ղրկել այստեղ. ո՞ւմ վրայ էք այդպէս կատաղել։ Ասենք՝ թէ հայը ձայն չի հանում, նրան ողջ ողջ ուտելու էք։ Աչքերիդ լոյսը կը թռցնեմ այս րոպէիս։ Կորէք, թէ չէք ուզում հաւի ճուտի պէս առաջիս թըր-պըտալ։ Քանի որ այս կուռը վրէս է, դուք չէք կարող այստեղից թել դուրս տանել։

Այս ասելով կրկին յարձակուեց, մէկի ուսը վէր բերեց, միւսի աղիքը վէր ածեց, այն վեցը տեսան որ ճար չկայ, ձիու մէջքը թռան ու մին-չև Երևանի բերդը մէկ գնացին։

—Ա՛րի, երեսիդ մեռնեմ, Թագուհի՛ ջան,

աչքդ բա՛ց արա, ես մեռած էի լինելու, որ ոքմին համարձակուէր քու մազին դիպչել, ասում էր փափկասիրտ Աղասին, աչքերից արտասուքը գլդուր-գլդուր վէր ածում։ Ջրի ետնից վազեցին, որ բերեն, Թագուհու երեսով տան։ Աղասին կողքին կանգնած սիրտ չէր անում երեսին ձեռ խփել, մատները ճմռել կամ խատել, տուն տանել. որովհետև Թագուհին դեռ կոյս էր, ուրիշ մարդի աղջիկ։ Մօրն էր մտիկ անում, նա էլ թուլացած ընկած էր, դուրսն էր նայում, ոչ մի ադամորդու շուաք չը կար փառաշների դիակներից զատ. ամենն էլ փախել էին, սարերով, ձորերով ընկել, որ իրանց գլուխը պրծացնեն։

Կանգնողներից մինը լեղապատառ վազեց տանուտէրի բակը, ներս ընկաւ ու գլուխը ծեծելով ձայն տուեց.

—Ձեր տունը չը քանդուի, ի՛նչ քէփ անելու միջոց էք գտել, գիւղը կոխեցին, Աթոյեանց աղջիկը տարան։ Աղասին արիւնի մէջ ծլծլում է, փառաշները կրակ են գցել, ժողովրդին այրում։

Այս ձայնի վրայ անբաղդ տանուտէր Օհանէսը վեր թռաւ, էլ ոչ գդակ հարցրեց, ոչ քուրք, բղգալով, գլուխը ծեծելով, միրուքը պոկելով տանից դուրս ընկաւ, որ տղին տեսնի։ Հոգին բերանը հասած, հարիւր տեղ վէր ընկնելով, ճակատը, ձեռները քարին խփելով, արիւնոտուելով հասաւ որդու կուշտը, արիւն արտասունքով խօսեց.

—Այս ինչ ես արել, Աղասի ջան, մէկ թուր էլ ինձ խփիր. վա՜յ իմ օրին, վա՜յ տունս բրեշակ եղաւ, բալա ջա՜ն, հոգի ջա՜ն… իմ հրեշտակ… վա՜յ, ամա՜ն, աչքս գուրս եկաւ, պտուղս խաւարեց։ Աղասի՛ ջան, քու ձեռով ինձ սպանի, էլ սրանից ետ կեանքս ինչի՞ս է պէտք, իմ երկնքի հաւասար որդի։

Այսպէս մղկտում էր խեղճ ալեորը. այնպէս էր երևակայում, որ սարդարի դահիճները կռները վեր քաշած, արիւնն աչքները կոխած, թրերը սրած գալիս են, որ իրան տանեն։ Ծերութիւնը ջանն առած ինչ անէր, մի ոտը հողի երեսին էր, միւսը գերեզմանում. աշխարքի վրայ այն մէկ պտուղն ունէր, այն մէկ զաւակը։

Երբ Աղասին սարդարի փառաշներին սպանեց, շուրջ-բոլոր ահաբեկուած տեսնելով՝ ինքն էլ իւր արածի վրայ մնաց սառած, կանգնած։ Ընկերներն էլ ժամանակ չկորցրին. գիտէին որ բոլորի վերջը մահն է, էլ ոչ հօր մտիկ արին, ոչ մօր, Աղասուն կապեցին ձիու վրայ ու ընկան Աբարանու սարը, որ կամ Փամփակ փախչեն կամ Ղարս կամ Ախալցխա, որ իրանց գլուխը ազատեն ռուսի կամ Թուրքի հողում։

Է.

Երկու ժամից ետը ինչ որ Քանաքեռի վիճակն էր, Աստուած ոչ նշանց տայ։ Սուգն ու շիւանը ընկաւ գիւղի մէջ, տուն էր որ քանդում

էին, մարդ էր, որ փայտ ու միս անում, փաթածներին պոքրտում։ Երիտասարդները չկային, սարդարի մարդիկը նրանց տեղ ծնողներին, ընտանիքներին թրի տակ անցին. մեկ ժամի մէջ ոչխարի պէս առաջներն արին, չլինքները թոկ դցած, ձեռները ետևները կապած, որ տանեն սարդարի դուռը։

Գիւղի իշխանները մտան Երևան ու քըշուեցին դէպի բերդի կողմը։ Քանաքեռից եկած կընանոնց փառաշները քարով, փայտով դէն արին, իսկ տղամարդկանց ներս քաշեցին։ Երկար ժամանակ նրանց ձայնը բերդիցն էր լսւում, կնանոնցը դրսիցը, որոնք բարձրաձայն իրանց գլուխը լալիս էին։ Երևանի նշանաւոր Սահակ աղէն, ինչպէս երևում է, լուր էր հասել այդ մասին։ Ահա փոքրաւորները առաջը դցած եկաւ բերդի դուռը։ Այդ միջոցին էր, երբ կատաղած փառաշները անաստուած կերպով խփում, հալածում էին հայ կնանոնց, որոնք կսկծից քար, հող պոկում գլխներին, երեսներին էին տալիս։ Այդ տեսնելով Սահակ աղի սիրտը մղկըտաց, ձին քշեց մի անգութ փառաշի վրայ ու մտրակը գլխին տըրաքացրեց.

—Հէնց այս րոպէիս հոգիդ կը հանեմ, սատկած շուն, ի՞նչպէս ես համարձակւում կինարմատի վրայ ձեռ բարձրացնում։ Կապեցէք այս լըրբերին, հրաման արեց փոքրաւորներին։

Այս միջոցին բերդի դռնից գլուխն երևա-

ցրեց ժողովրդից սիրուած Սվանդուլի խանը. Թուրքերի մէջ ոչով հայերի կողմը այնքան չէր պահում, որքան այս օրհնուած մարդը։ Ցուսահատ կնանիքը միաբան ճիչ արձակեցին ու ընկան Նրա ձիու առաջը.

—Խա՛ն, գլխովդ ման տանք, վերևում Աստուած, ներքև դու. կամ մեզ ջուրն ածա, կամ մեր ցաւին մի ճար արա։

Խանն իսկոյն փառաշներին մորակելով գէն արեց ու ձիուց վէր գալով ձեռը Սահակ աղի գոտիկը գցեց ու տխուր, ունքերը կիտած հառաչեց.

—Ա՜խ, փուշ ու տատասկ դառնար անիծած ղաջարու (պարսկի) ճամբէն, մեր հողը չը մտնէր։ Տէ՛ր Աստուած, այս ի՞նչ է ժողովրդի վիճակը։ Մէկ աղջկայ պատճառով իսկի վայել բան է՞ այսքան տուն քանդելը. Աստծուն ի՞նչ պատասխան պէտք է տան։ Այս տանջանքներին քարը չի դիմանալ, ի՞նչ թէ մարդը։

Բարեսիրտ խանը իւր ծառաներին հրաման տալով կարգադրեց, որ հայ կնանոնցը իւր տուն տանեն մինչև ինքը գայ։

—Մ՛ելիք, գարձաւ Սահակ աղին, արի շտապենք, դիւանխանէն գնանք. եթէ մի կէս ժամ ուշ վրայ հասնենք, խեղճ բռնուածների տունը կը քանդուի։ Աղասու արածը իսկի էլ պախարակելու չի. ափերիս եմ ասում. այստեղ լինէր, աչքերը կը համբուրէի. քաջ տղէն այնպէս կըլինի։

Այսպէս խօսելով Սահակ աղի հետ գլխակախ մտաւ բերդը։ Այն միջոցին մտան դատաստանատուն, երբ հայ գիւղականների աչքերն ու կըռները (Ազասու հօր և Քանաքեռի քէնդխուդաների) կապել, չոքացրել էին, որ շլինքները տան։ Դահիճները թուրները սրած գլխավերևը կանգնել էին։ Այլևս չը համբերեցին Սվանղուլի խանը և Սահակ աղէն, իրար հետ Սարդարի առաջ չոքելով գոչեցին.

—Խա՛ն, գլխիդ մատաղ լինենք, կամ մեր գլուխն էլ սրանց հետ կտրիր կամ մեր ունեցած չունեցածը ջուրն ածա. միայն այս խեղճ ժողովրդին մեղք արի, սուրը մի՛ քաշիր։ Սարը քու առաջին գլուխ չի բարձրացնիլ, ծովը քեզ տեսնելիս բերանը կը փակի. արարած աշխարքը Թըրիդ առաջին ստրուկ է դառել, ինչի՞ մէկ չնչին աղջկայ պատճառով, մէկ երկու փառաշի խօսքով այնքան տուն ես քանդում։ Քու բուրդն ու պալատը ողորմութեան դուռն է, ինչի՞ ես արիւնի տեղ շինում։ Սրանց ծեր հասակին խնայիր, ինչո՞վ են մեղաւոր սրանք, որ մէկ երիտասարդի արարքի պատճառով սուրն ես քաշում։ Աղջիկ ես ուզում, հազարը կայ, ո՞րին աչքդ բռնի, որ քեզ մատաղ չը լինի։ Մեր հողին ուզի, քեզ տանք, աղջիկն ինչ գժուար բան է։ Ողորմած խա՛ն, դու չե՞ս որ ամեն օր արդար բերնովդ ասում ես թէ՝ հայերը իմ աջ թևը, իմ երկիր շէնացնողն են։ Առիւծի համար ինչ փառք, որ դառան գլուխը

ջարդի։ Անկարգութիւն անող երիտասարդներին պէտք է բռնել, ծերերը ի՞նչ մեղ ունեն։ Սարդար, երկնքի ու երկրի տէր, եթէ մեր արիւնը քեզ համար թանկ է, սրանց գլուխը մեզ բաշխիր։

Այսպէս աղաչանք անելով չոքէչոք տարան թուրները առաջը դրին, ոտի տակը համբուրեցին։ Սարդարը խոր լռութիւնը վերջապէս ընդհատելով խօսեց.

—Ձեր այդ խօսքերով ձեռներս կապում էք, խան, մելիք։ Ի՞նչ կըլինէր մի քիչ ուշ էիք եկել։ Այսպէս բան կըլինի՞, որ ես տեսնում եմ. հայ ազգը ոչ թրից է վախենում, ոչ թուանքից. կրակն ես գցում, էլի իւր հաւատն է պաշտում, ծառիցն ես կախ անում, միսը պոկում, բերանը տալիս, էլի իւր խաչն է սիրում, Քրիստոսի անունը տալիս։ Սրանց օրէնքը մի կնիկ պահելու իրաւունք է տալիս, մեր օրէնքով քանի որ կամքդ տայ։ Մեր մարգարէ Մահամմադը ասում է՝ թըշնամուդ աչքը հանիր, սրանց Քրիստոսը պատուիրում է՝ նրան սիրիր, օրհնիր, թէկուզ քեզ հալածի. այս խելք է՞։ Այդ կարճամիտները թող սիրտ անեն, մեր հաւատն ընդունեն, կը տեսնեն թէ մեր շահը ինչ փառքերի է հասցնում։ Հայ տղէքը Ստամբօլ ընկնելով վէզիր ու փաշա են դառնում, իսկ Թէհրան գնացողը նազիր ու խան. սրանից էլ մեծ ինչ պատիւ կուզի մարդ։ Սրանք այսպէս անտաշ են կտրուել, ոչինչ չեն ընդու-

նառամ։ Մեր կուռը յոգնեց սրանց կոտորելով, մեր թուրը գլացաւ սրանց սպանելով, այս ազգին հատնիլ, վերջանալ չկայ։ Ոչ սրից են վախենում, ոչ փառքից խաբւում։ Ծծկեր երեխէն էլ պարսկի անունը լսելիս ուզում է մարդ կոտրատի, էլ ինչ համբերես։ Մէկ գիւղացի տղայ համարձակուել է իմ ծառաներին սպանել, ինչ անեմ, սիրտս ուզում է բերնովս դուրս գայ։ Նա այս օձերի ճուտն է. մինչև մօրը չը տանջես, միսը բերանները չը տաս, ճուտը ճանկ կընկնի։

Էլի եմ ասում, խան, մելիք, սրանց ալածը համբերելու բան չի. բայց երբ եկել էք իմ դուռը, սրանց գլուխը ձեզ եմ բաշխում, թող շղթայ գցեն սրանց ոտներն ու վիզը, բերդում այնքան պահեն, մինչև մեղաւորը իւր ոտով գայ։ Ցանկանում եմ, այն փուչ Աղասուն մէկ էլ տեսնեմ, սիրուն հասակին մէկ անգամ էլ նայեմ, ետոյ միսը քաշեմ բերանը տամ, որ սրտումս վիշտ չը մնայ։ Դրանով կիմանան ամենն էլ, որ սարդարի հրամանը տափը գցել չի կարելի։

Ա՛յ ծերունիք, վերջի անգամն եմ ասում, թէ ձեր տղէքը խելք ունեն, թող ձեզ խեղճ գան, ետ գառնան. այս րոպէիս հարիւր ձիաւոր նրանց ետնից ընկած սար ու ձոր ոտի տակ են տալիս։ Շահի գլխով երդւում եմ, եթէ մինչև էգուց ձեր տղէքը ետ կը գան, դուք կազատուէք, թէ չէ ու չէ։ Ձեր ազատուելը նրանց գալուց է կախուած, գնացէք ու ձեր գլխի ցաւը քաշեցէք։

Այս խօսքի վրայ խանն ու մելիքը չոքած տեղից վեր կացան, սարդարի փէշն ու աթոռի ոտը համբուրեցին ու անթիւ անդամ գլուխ տալով դուրս եկան։ Հրաման տուին, գիւղի իշխանները նոյնպէս չոքած տեղից վեր կացան, աչքների կապերը արձակելով՝ շղթաներ բերին, գցեցին վիզն ու ոտները, այդպէս շղթայակապ տարան ներսի բակը ու դրսի աշխարքից բաժանեցին։

Մենք դնանք Աղասու մօտ։

## Ը.

Ինչ որ Աղասու դրութիւնն էր, Աստուած թշնամուս չըպատահեցնի. ընկերները նրա ձեռն ու ոտը կապած Զանգի գետի վրայով անցկացրին։ Այնպէս էին փախչում, հէնց իմանաս սար ու ձոր բերանները բաց կալած ուզում են նրան կուլ տալ։ Քաջերը ջանք էին անում, որքան կարելի է հեռու փախցնել։ Աղասին շատ տեղ ուշաթափ լինում, քիչ էր մնում ձիուց վէր ընկնի, դարձեալ ընկերները հասնում, ջուր էին ածում երեսին, ականջները տրորում, ետ էին բերում։ Մութը գետինն առնելիս, նրանք մտան Արարանի քանդուած եկեղեցին։ Ձիանն այնքան էին քշել, որ շունչ քաշելիս փոր ու աղիք իրար էին կըպչում։ Վաթոն սկսեց ձիանը ման ածել, Կարօն սար ու ձոր աչքի տակ առնել, Մուսէն Աղասուն ուսին դրած մտաւ եկեղեցու աւերակը։ Գլուխը դրեց գոգը, ձեռը երեսին ու աչքը երկինք գցեց,

որ իմանայ թէ աստղերն ինչ են ասում։ Միւսներն էլ ընկան դէս ու դէն, որ ձիանոնց համար մի քիչ ուտելիք ճարեն։ Այն միջոցում դաշտումն ինչ կը լինէր, խոտի չոփերն էին մնացել տեղ տեղ ցցուած։ Գերեզմանատունը այնքան սարսափելի չէր լինիլ, ինչպէս այս ամայի դաշտը։ Ամեն մի լեռան միջից կամ քարի տակից դժոխքի ձայն էր գալիս, ամեն մէկ քար, ամեն մէկ թուփ նրանց աչքին դև էր դառել, ձին մէկ ոտը փոխելիս կամ փռընչալիս քարերն ուզում էին պատռուեն, ձորերը տրաքեն։ Երբեմն որ Աղասին ախ էր քաշում ու ոտին գլխին անում, ընկերները այրւում փոթոթւում էին։ Հաւատարիմ շունը գլուխը նրա ոտի տակ դրած մնացել էր լուռ, ձին նոյնպէս բերին գլխավերևը կապեցին, որ գուցէ նրա շունը Աղասուն մի ճար անի։ Պատուական Մուսէն երեսը երեսին էր դնում ու կանչում։

—Արևիդ մատաղ, Աղասի, այս ինչ օրն ես ընկել, աւելի լաւ չէ՞ր մեր աչքը դուրս գար, քան քեզ այս օրին տեսնէինք։

Այն միւս տղէքը ձիանոցը ջուր տուին, ձեռները մէջքներին քսեցին, կրկին թամքեցին, սանձերը գլուխներն անելով, հրացան, ատրճանակ նոր ազզօթի տալով, ամեն մինը իւր ձիու սանձակոթը բռնած եկաւ Աղասու կողքը կորեց։ Արտասուքը առուի պէս աչքներից հոսում էր. ծնողների վիշտը, իրանց սև օրը մի կողմ թո-

ղած, իրանց սիրելի ընկերին ուշաթափ վիճա-
կում տեսնելիս՝ սրտի խիստ կսկիծից ուզում էին
քար ու տունկ պոկեն, գլխներին տան. մէկ սա
էր ընկնում Աղամու վրայ, մէկ նա. «փառքդ
շատ լինի, ողորմած Աստուած, հէնց այս առա-
ւօտ ամեն աչք մեզ էր երանի տալիս, ինչ
վատ բան արինք, որ այս պատժին հասցրիր»։
Այպս դառնում էին դէպի իրանց աղիզ ընկերը.

—Աղասի ջան, քու պատճառած կսկիծի ձե-
ռից ոՙր քարի առաջ լաց լինենք, որ հովութիւն
գտնենք։ Աննման ընկեր, ինչ կը լինի, բերանդ
բաց անես, քու ջանին մատաղ, ինչ ես մեզ այդ-
պէս այրում, փոթոթում։ Աշխարքն էլ ինչներիս
է պէտք, երբ քեզ չենք ունենալ։

Այս խօսքի վրայ էին, երբ յանկարծ մէկ
ձիու ոտնաձայն եկաւ, երկինք գետինք գլխնե-
րին սևացաւ. ձեռները տարան ուսի հրացանը,
իրանց ուղղեցին. ամեն մի րոպէ մահուան դի-
մաւորելու պատրաստ պէտք է լինէին. հաղորդի
փոխարէն խուրաքանչիւրը մի պտղունց հող առաւ
բերանը, մի քարի առաջ չոքեց, մեղքը խոստո-
վանելով տեղից վեր թռաւ։ Ջիանը ականջները
խըլըշացրել էին, այն կողմն էին մտիկ անում,
որտեղից ձայնը գալիս էր։ Տանը մի կողմ քաշե-
ցին, մատով ձեռով հասկացրին, որ ձայն չը հա-
նի. իրանք թուր ու հրացան ձեռներին պատ-
րաստ սկսան պատի արանքից լրիկ ականջ դնել,
որ տեսնեն եկողներն ովքեր են։ Ոտների տակ

կրակ էր վառում, անիծած բուքն ու քամին հիւսիսի կողմից էր, ձայնը փակում էր։

Այսպէս կէս ժամի չափ սպասողական դրութեան մէջ մնացին փայտացած, չէին ուզում ծպտալ։ Շատ մտիկ արին, չեղաւ. հէնց ուզում էին հրացանները վէր դնեն, նստեն, Կարօն բերանը բաց արեց.

—Տղէրք, տղամարդութիւնն այն է, որ մեր գլուխը թշնամու ձեռ չը տանք, երևում է ետևներիցս մարդ են գցել, ման գալիս։ Թող ման գան, դրանց Սուրբը իրանց խռով կենայ, բոլորին կամ կը ջարդենք կամ կըջարդուենք։

Այս խօսքից ետ յանկարծ տեղից վեր թռաւ, թուրը դուրս քաշեց, որ եկող թշնամու առաջը վաղի, ընկերները փէշից քաշեցին, ձեռները բերաններին դրին, հասկացնելով որ անձայն նստի, որովհետև ձիանոց ոտի թրխկոցն ու փռընչոցը այնպէս մօտեցաւ, որ կարծես ականջների տակին լինի։ Թշնամին դեռ հեռու էր, բայց նրանք գիտէին, որ խաղաղ գիշերին ձայնը շուտ է տեղ հասնում։ Լռեցին որ իրանց տեղը իմաց չանեն։ Եկող թշնամիների խօսակցութիւնը քիչ քիչ ջոկւում էր, պարզ գիշերին քարերն էլ ձայն էին բերում.

—Լաւ են փախել անզգամները, ասեց թուրքերից մինը, նզովուած քամին հետքները քերել կորցրել, է մութն էլ մի կողմից է բանը գժուարացնում, բայց ո՞ւր կըփախչեն մեր ձեռից. եր-

վնքում լինեն՝ վէր կը բերենք։ Դեռ առաջ գը-նանք, այս դաշտում նրանք չէին միայ։

—Աչք է որ էգուց առաւօտ կամ կը ծիծա-ղի կամ լաց կը լինի, վրայ բերեց երկրորդ Թուր-քը, եւ ինչո՞վ սարդարին իմ շնորքը ցոյց տամ, որ նրանց ողջ ողջ չը բռնեմ ու ընծայ չը տամ։

—Ա՛յ եղբայր, խօսեց երրորդը, ինչ ձեռ-ներին գտնենք, բաժին անենք։ Աղասուն աշխա-տենք ողջ անվնաս ճանկ գցենք, ձեռները -կա-պենք, ձիու առաջ քշենք կամ ոտներն էլ կապենք, ձիու կողքից կախած տանենք, որ իւր արժանա-ւոր պատիւն ստանայ, որովհետեւ նա քաջ տղա-մարդ է, միւսներին սպանենք էլ, ցաւ չի։

—Տղամարդ է հա՛, գոչեց չորրորդը Թուրը օդում ճոճելով, այս Թուրը նրան այսօր Աստծով իւր տղամարդութիւնը կուտացնի, սպասէք մի ձե-ռըս ընկնի, ես նրան ռաշիդութիւնը ցոյց կը տամ։

—Տօ՛, բերանդ քեղ արա, Մահմադ, խօսեց Թուրք ընկերը, լաւ գիտենք ինչ պտուղ որ ես. նրան առիւծ լինի, չի յաղթիլ. քա՞նի անգամ քեզ նմաններին տասնով, քսանով առաջն է արել ու հո-գիները հանել։ Բանն արա, եառյ պարծեցիր, այսպէս դարդակ քամի կուլ տալով ոչս չի լինիլ։

Այս խօսքը մեր տղերանց սիրտը մի Թիզ բարձրացրեց։ Զքաշեց երկու րոպէ, Թուրքերից մինը զգուշացրեց.

—Թուր, հրացան պատրաստ պահեցէք, սա-տանէն հակառակ է, ո՞վ գիտէ այս քարերի տա-

կին թագնուած են. ասածներս կը լսեն ու յանկարծ այնպէս վրայ կը թափուեն, որ ժամանակ չենք գտնիլ ձեռներս գլուխներս տանելու։ Սրան Աբարան կասեն. Աղասու պէս առիւծը այսպէս տեղը քսան ձիաւորին չի ասիլ, թէ Աստուած է ստեղծել։

—Տօ, դէ քիչ գովիր այդ անհաւատ հային, վրայ բերեց պարծենկոտ Թուրքը, չէ՛, չէ, մեզ ողջ ողջ կո՛ւտի։ Հայն ինչ է, որ ինչ ուժ ունենայ. այնքան ողջ մնամ, Նրան աչքս առնի, կը տեսնէք թէ ինչպէս հաւի ճուտ կը դառնայ առաջիս։

Այս խօսքն էր բերանում, որ ամենավերջն եկող Թուրքը բղաւելով խօսեց.

—Ա՛յ աղա, ա՛յ աղա, եկէք այս ժամից հեռու անցկենանք։ Ասում են՝ առաջուայ ժամանակ մէկ խան եկել է որ քանդի, յանկարծ միջից կանաչ ու կարմիր ձիաւորներ այնքան են դուրս եկել, որ սար ու ձոր բռնել, խանի զօրքը կոտորել, հալածել են, իրանք էլ անյայտացել։ Սրա միջում ասում են Ս. Մողնու մասունք կայ թաղած. դուք լաւ էք իմանալու, որ այս գիժ Սրբի հետ կռուել չի լինիլ, մարգի վիզը ծռում, երեսը ետևն է գցում. հազար այսպէս բան իմ աչքովս եմ տեսել։

—Բերնիցդ հայի հոտ է գալիս, Մա՛շադի, ամօ՛թ այդ մեծ մօրուքիդ, էլ ո՛ւր ես վրէդ պահում, հինա դնում. տղամարդի գտակ չի՞ գլխիդ։ Տօ, հայն ինչ է, որ իւր Սուրբն ինչ լինի։ Ես

քու ջղրու մինչև այս գիշեր սրա միջումը խորո֊վաճ չանեմ, չուտեմ, ձիս միջին չը կապեմ, չա֊պականեմ, բաս ես մարդ չեմ, էլ այս միրուքը վրէս չեմ պահել։ Քանի այդպէս ժամի պատ իմ ձեռովս եմ քանդել, քանի Սրբերի աչք այս մա֊տովս հանել, դու հիմի եկել պառաւի տակ ես կարգում գլխիս։ Աղօթարանը գլխիդ խռով կե֊նայ. եթէ այդ սրտի տէրն ես, էլ ո՞ւր ես նամազ անում։

Այս խօսքի միջումն էր, որ յանկարծ եկե֊ղեցու աւերակից «եմ Ս. Սարգիս» աղաղակը լսուեց. հետնուհետ հրացանների ուժգին ճռռոց բարձրացաւ ու հարա֊հուրոց, յարձակում սկսուեց։

—Տղէրք, ձեր ջանին մեռնեմ, ձայն տուեց աժդահա Կարօն, էլ մտիկ մի՛ք անիլ, մեր թուրը սրանց գլուխը, սրանց Սուրբը նզովաճ, երեքի գլուխը թոցրի։

—Երկուսն էլ ես թրիս մատաղ արի, քաշ կացէք, այն կողմից գոռաց Վաթոն։

—Երկուսին սպանել, մէկի գլուխն էլ ահա ոտիս տակն է, գոչեց Վանին։

—Տղէ՛րք, փախան, ձիանը նստեցէք, ետևնե֊րից հասնենք, ասեց Կարօն. սրանց եկաճ ճամ֊բէն նզովուի, սովորել են դիւղերում հաւի գլուխ թոցնելով ման դալ, հայերի արիւնը խմել. հասէք ետևներից, Սուրբ Սարգիսը մե՛զ օգնական։

Ասին ու վիշապի պէս ընկան թշնամու քա֊մակիցը, որին ինչ տեղ հասցրին, այնտեղ կտրը֊

տեցին, բայց չափից դուրս տաքացած, ոգևորուած այնպէս առաջ գնացին, որ էլ միտք չարին՝ թէ Աղասին տագնապի մէջ ընկեր է ձայն տալիս, ընկեր չը կայ, մի է քաշում, ձայնը լսող իմացող չը կայ։

Հրացանների ճռռալու, տրաքելու ժամանակ էր, որ մեր ուշաթափուած քաջը ետ եկաւ, տեղից վեր թռաւ, ընկաւ ձիու քամակը ու խելքը կորցրածի պէս ինքն էլ չէր իմանում, ուր է գնում։ Թուրը դէմն եկող մէկ թուրքի գլխին հասցնելուն պէս գլխի հետ երկու կտոր եղաւ։ Մինչև ձեռը տանելով դաշոյնը կը հանէր, թուրքերի շպրտած պարանը ընկաւ վիզը, շատ էլ ուզեց ձին առաջ քշել, չեղաւ. ձին տակից դուրս թռաւ, ինքը գետնին դիպաւ ու չորս տղամարդ րան վրայ թափուեցին։ Նրա շանը վաղուց էին ուզում սպանել, որ ձայն չը հանի, բայց այդ տիրասէր, հաւատարիմ կենդանին տեսնելով, որ իւր տիրոջն էլ օգուտ չի անիլ, ընկաւ գնացածների ետևից։ Թուրքերը Աղասու ձեռները կապեցին, բերանը բամբակով լցրին, թաշկինակով ամուր սխմեցին ու տարան։ Միւս օրը թնդանօթն էր ու Աղասու ջանը. էլ պրծնում չըկար։

Թ.

Աստուած գիտէ, թէ տղերքը ուր էին հասել, երբ յանկարծ ետ դառան ու Աղասու շանը առաջներին տեսան. «վա՜յ մեր տունը քանդուեց»,

այս ինչ արինք. մեր ձեռով մեր աչքը հանեցինք. շտապենք հասնենք Աղասու ետնից։

Եկեղեցու աւերակում, ուր նրան թողել էին, չկար. մէկն այս սարն ընկաւ, մէկն այն ձորը. քարը լեզու չունէր, որ նրանց պաղատելուն պատասխանէր. ձին իմաստուն չէր, որ ման գար, գտնէր. շունն էլ իսկոյն առաջներից անյայտացել էր, ո՞ւր գնային, ո՞ւր կորչէին. եթէ գետինը պատռուէր, ներս կերթային, միայն թէ իրանց սիրելի ընկերին գտնեն։ Լուսնեակ գիշեր էր, շատ դէս ու դէն ընկան, բան չը գտան. կրկին իրար կուշտ հաւաքուեցին ու խորհուրդ արին.

—Անպատճառ Աղասին հրացանների ձայնի վրայ զարթնել է ու փորձանքի մէջ ընկել. շունը անսասուն տեղով նրան թողել է, մեր ետնից վազել, որ հասնենք նրան, ազատենք։ Աղասուն բռնողները առաջ չէին գնալ. մէկ տեղ թագնուած կը լինեն։

Այսպէս խօսելով մնացել էին տարակուսած։ Կարօն առաջարկեց ընկերներին, «տղէրք, եկէք քիչ էլ սպասենք, Աղասու շունը չը կայ, նա իմաստուն կենդանի է, ինչպէս որ լինի, հոտի վրայ նա կը գտնի. թէ ճար կայ, նրանից կը լինի այս գիշեր։

Սևասրտած, իրար կողքի նստած միտք էին անում, որ յանկարծ խելօք շունը լեզուն հանած, հեթհեթալով լոյս ընկաւ։ Էլ չը մնաց, չսպասեց, դէպի ետ վազեց. կարծես նրանց օգնութիւն էր

կանչում։ Տղերքը ետնից շտապեցին. բաւական տեղ գնացել էին շունը ետևի ոտը բարձրացրեց, կանգնեց։ Ինչ էլ արին, առաջ չը գնաց. իսկոյն իմացան զգոյշ անասունի միտքը. ձիաներից վէր եկան, մէկի յանձնեցին ու Կարօյին առաջները գցած սուս փուս ոտները փոխեցին։ Մէկ բլրի մօտեցան թէ չէ, շունը կրկին կանգ առաւ, հոտոտեց։ Հրացանները առան ձեռները. Աստծու ողորմութիւնը հասաւ, նրանք այն կողմից գնացին, որ բլրի ստուերը մնաց առաջներին։ Քարերի տակով փորսող տալով այնքան գնացին, որ մտան մէկ փոսի մէջ. ջուր չը կար ներսը, անձրևի քանդած էր։ Բլրի ստուերը մէկ հինգ արշին էլ նրանց գլխի վրայով այն կողմն էր ընկել։ Այս փոսի միջով կռացած այնքան զգոյշ գնացին, որ թշնամին մնաց մէջտեղը։ Լուսնեակը ուղղակի ընկաւ Թուրքերի ճակատներին, տեսան որ Աղասին մէջներում չի, սիրտները տեղն ընկաւ։ Մի քիչ շունչ առնելուց ետը իւրաքանչիւրը մի Թուրքի ճակատի նշան բռնեց. հրացանների տրաքելն ու թշնամիների բանհոգի լինելը, անշնչանալը մէկ եղաւ։ Հաւերի սլէս դեռ թրպրտում էին, երբ մեր տղերքը վրայ հասան։ Նրանց ուրախութիւնը լեզուով պատմել չէր լինիլ. առանց ժամանակ կորցնելու վերցրին իրանց կորցրած դանձը, հանեցին թշնամու զէնքն ու զրահը, հագուստները ու բարձելով Թուրքերի ձիանոնց վրայ շարժուեցին։ Այդ դիշերը տասնուհինգ մարդուց աւելի էին սպանել։

ժ.

Մեր ճամբորդները մտան Փամփակ, որ ռուսի ձեռին էր ու լուսադէմի մօտ Պարնի գիւղի վրայ թեքուեցին. օրը նոր բացուած հասան գիւղի տանուտէրի դուռը ու ձիաներից վէր եկան։ Տանուտէրը ծանօթ էր, տեսաւ թէ չէ՝ ուրախ բացականչեց.

—Աղասի ջան, արեւիդ մատաղ, այս ժամանակ, այս վիճակին որ տեղից ո՞րտեղ. օրհնուի այն քամին, որ քեզ մեր կողմերն է բերել։ Ա՛յ ծառաներ, վազեցէք դէսը, մեր հիւրերի ձիանը ման ածեցէք, ետոյ գոմը քաշեցէք։ Ա՛յ հարսներ, շտապեցէք, օղան վեր քաղեցէք, բուխարին վառեցէք։

Այս ասելով հիւրերի ձեռից բռնած ներս համեցէք արեց։ Մի ակնթարթում հարսները շոր, կարպետ փռռեցին, ակին-կրակին արին ու հիւրերին խոնարհ գլուխ տալով դուրս գնացին։ Տանուտէրը հոգու մէջ ցնծում էր, որ բարեկենդան օրերին այսպէս թանկագին հիւրեր լոյս ընկան. «եթէ ձիաւոր ղրկէի ետեւներիցդ, Աստուած է վկայ, չէիք գալ, մէջտեղը մի եւ կայ. էլ պատճառը չեմ հարցնում, վախենում եմ ետ փախչէք»։ Վերջին խօսքի վրայ բարեսիրտ տանուտէրը ծիծաղեց։

Մեր տղէքը սուս փուս՝ Աղասու աչք ունքին էին մտիկ անում. սա էլ ձեռը բերանին դր-

նելով խնդրում էր տանտիրոջ, որ հարցմունքներ անելը ուրիշ ժամանակի թողի։ Սա հասկացաւ նշանը ու լռեց։

Մի ժամ չանցկացած ողջ գիւղը համարեա օդայի շուրջն էր հաւաքուել։ Լսել էին, որ եկողները Երևանու կողմից են, բայց երբ հաստատ տեղեկացան ,թէ քաջ Քանաքեռցիք են, էլ լռեցնել չէր լինում, ամեն կողմից կանչում էին.

—Բարով, մեր քաջ Աղասին բարով։

Ամենից առաջ նրանց խնդիրը տանուտէրի մօտ այն էր, որ թող անի դրան միակից եկողների պատկերներին մտիկ անեն, մանաւանդ պարթև Աղասուն տեսնեն։ Այդ խնդիրը կատարուելուց ետը աղաչում էին իմանալ, թէ ինչպէս է պատահել աղջիկ փախցնելն ու փառաշների սպանուելը։ Աղասու ընկերները ճարահատած մէկ այս խմբի մէջն էին եղելութեան մանրամասները պատմում, մէկ այն։ Լսողները ոգևորուելով ձայն էին տալիս.

—Գլխիդ մատաղ, Աղասի, կտրիչ հայը այդպէս է լինելու. հազար բարի լինի քո գալուստը, ողջ գիւղի հիւրն էք, մեծով փոքրով ձեզ հետ բարեկենդանի կը տանք և կուրախանանք։

Աղջիկ թէ տղայ մօտենում էին Աղասուն. հագուստը, երեսը, ձեռը համբուրում, և ուրախ ետ դառնում այս ու այն խմբի մօտ։ Տանուտէրը ձիաւոր ուղարկեց Ղարաքիլիսա իշխան Սաւարզամիրզի կուշտը ու փախստական տղերանց

գալստեան մասին իմաց արեց։ Հետևեալ օրը հրաման եկաւ տանուտէրի վրայ, որ մեծ պասի առաջին շաբթին իւր հիւրերը վերցնի ու՝ բերի իրան ներկայացնի։

Բարեկենդանը հիւրասէր Պարնի գիւղում վերջացնելուց ետը՝ Աղասին քսան ձիաւորով վերկացաւ գնաց Ղարաքիլիսա։ Ժողովուրդը լսել էր անունը, վազել էր գիւղից դուրս նրա առաջը. հազար բերան աջ ու ձախից նրան օրհնում, գովաբանում էին։ Ռուս մեծաւորը նրան շատ հաւանեց. «միամիտ կա՛ց, ասեց նա, անպատճառ կաշխատեմ մի կերպ սարդարի սիրտն առնել, քեզ հետ ու Քանաքեռցոց հետ հաշտեցնել. առաջի՛կայ ամառ մենք իրար կը պատահենք, իմ խնդիրը նա չի մերժիլ, քեզ կը ների։ Տանուտէր, Աղասուն և իւր ընկերներին այնպէս խնամքով ու պատուով պահեցէք, որ չիմանան թէ օտար դռան են. մէկ էլ զգոյշ եղէք, աչք բռնեցէք, չըլինի թէ պարսիկները գաղտնի վրէժ հանեն սրանցի՛ց»։

Այս ասելով նշան արեց որ գնան։ Տանուտէրն ուզում էր կրկին Պարնի գիւղ տանել, միւս գիւղացիք, որ նոյնպէս փամբակեցի էին, տանուտէրի առաջից բոլոր ձիաւորներին իրանց մօտ տարան, որ այժմ էլ իրանք պատուեն ու մեծարեն։ Նրանց մօտից էլ Լոռեցիք հրաւիրեցին ու Դվալ սարի երեսով իրանց կուշտը տարան։ Մինչև ամառ բացուելը բոլոր ժամանակ գիւղէ գիւղ ման

*էին ածում այս սիրելի հիւրերին. օրով, շաբթով պահում մխիթարում։*

*Ուղիղ է, Աղասին ասում խօսում էր, բայց տխրութիւնը նրա դէմքի ու աչքերի վրայ այնպէս էր կիտուած ինչպէս սև ամպ. շատ անգամ ա՜խ քաշելիս սիրտը ուզում էր պոկ գալ. «Նազլու, «Վաթսուս» խօսքերը օր ու գիշեր նրա բերանից չէին կտրւում. քարի վրայ թէ աղբիւրի գլխին նստած հանապազ հառաչելով հօրը, մօրը և իւր զաւակներին էր յիշում։ Նրա վիշտը այնքան թեժ էր, որ ոչ Համզաչիմանի լեառն ու ծաղիկը կարացին նրա այրւող սիրտը հովացնել, հանգստացնել, ոչ Փամբակի հայ ժողովրդի հիւրասիրութիւնը։ Ամիսներով պարապ նստելուց ձանձրացել էր. բերանէ բերան պտտւող լուրերից իմացել էր, թէ իւր պատճառով Թանաքեառի գլխին ինչ պատիժ է եկել. նստկան կեանքի սովոր չէր, վճռեց գնալ մօրն ու կնկանը Թանաքեառից փախցնել մի ապահով տեղ, ետոյ ընկերների հետ իբրև զարհուր տարածող ընկնել սարէսար ու իւր գիւղի, հասարակութեան վրէժը պարսիկներից հանել։*

*Փամբակեցիք մեր տղերանց իրանց հետ տարել էին եայլաղ-ամարանոց, որ վիշտները մոռանան՝ յոյս դնելով Սաւարդամիրղի խոստումի վրայ, բայց քանի որ եայլաղի բարձր տեղերից իրանց լեռները, իրանց հող ու ջուրը տեսնում էին, այնքան վրիժառութեան կրակը երիտասարդ սրտերում վառւում էր։ Սարեցիք չէին թողնում*

հիւրերին ներքև գնալ, խափանում էին նրանց մը-տադրութիւնը. բայց Աղասին մի գիշեր սրտի գալով պատուիրեց տղերանց, որ ձիաները պատ-րաստեն։ Երբ ամարանոցում ամենը քնած էին, նրանք զէնք ու զրահում մտած իջան բարձր սարի լանջերից ու Տորագեալի ճամբէն բռնեցին։

## ԺԱ.

Լսել էին, որ Անի քաղաք կայ, այն էլ աւե-րակ, բայց թէ որ կողմը, հաստատ չը գիտէին։ Բաղդը առաջնորդում էր նրանց հէնց այդտեղ։ Հանգստարանի ձայն էր գալիս, երբ էգսի գիշերը մեր ճամբորդները մտան այդ հռչակաւոր քաղաքը։ Միայն սրտոտ մարդը կարող էր այս միջոցին այսպիսի ամայի տեղ գնալ. տխուր ու լուռ պա-րիսպների մէջ մտնելով հէնց իմացան, թէ մէկ մեռելատուն ընկան։ Ամեն մէկ ձիու ոտի շըփըլ-թոցից սար ու ձոր դըրմբում էր։ Ընթերցողը փորձից կիմանայ, որ մութ ժամանակ քանդուած եկեղեցու մօտով անցկենալիս մարդի մարմինը սարսըռում է, գերեզմանաքարերը դև են համար-ւում։ Թեթև բան չէր ժամի ու աշտարակի մօ-տենալ, այն էլ ղըլբաշի հողումը, ուր ամեն մի քարի տակ հարիւր գլուխ էր կորւում։

Սրտոտ Աղասին ձայն տուեց.

—Տղէ՛րք, տղամարդութեան ու քաջութեան ժամանակ է, թուր ու հրացան պատրաստ պա-հեցէք, ձիանը հանգստացրէք, ջրեցէք, քաշեցէք

մի պատի տակ. ես ուզում եմ շունս առնել, դէս ու դէն կամաց կամաց աչք ածել. տեսնեմ տեղներս ապահով, անվտանգ է՞, թէ դարձեալ սրով ու կրակով պէտք է գլուխ պահենք։

—Աղասի ջան, խնդրեցին ընկերները, մի՛ գնալ, սպասիր մինչև առաւօտը լուսանայ։

Աղասին ուշ չը դարձրեց, հրացանն ուսին, ատրճանակները կոխքից կախ, սուրբ Սարգսի անունը տուեց ու ոտը փոխեց։ Հաւատարիմ շունը գլուխը նրա ոտից չէր հեռացնում. մէկ հոտ առնելիս կամ ձայն իմանալիս կանգնում էր, ետևի ոտի մէկն էլ բարձրացնում, մի քանի րոպէ ականջ դնում, ապա ոտ փոխում։ Թափթըփուած քարերի ու թումբերի միջով մի քիչ առաջ գնալուց ետ մի եկեղեցու դռնից կրակի լոյս ընկաւ Աղասու աչքով։ Էլ երկար չըմտածեց քաջը, որ այսպէս տեղը գողից ու աւազակից զատ ուրիշ ադամորդի չի լինիլ, անվախ գնաց ուղղակի դէպի կրակը ու տեսաւ հետևեալ պատկերը. տաս հոգի քուրդ եկեղեցու մէջ կրակ են արել, շուրջ բոլոր նստոտել, խորոված են անում, շամփուրներով քաշում ուտում, անհոգ ծիծաղում ու երբեմըն արթուն շների պէս աչքները կամ դուռը գցում կամ անկիւնը։ Աղասին վճռեց ներս մտնել. մինչև քուրդերը ձեռներով աչքներին շուաք կանէին, որ ներս մտնող ադամորդուն դիտէին թէ ո՞վ է, նա կամաց հանգիստ քայլեց ներս. առանց

ողջոյն տալու, լուրջ դէմքով մօտեցաւ կրակին ու կռանալով ձեռը մեկնեց խորովածի շամփուրներին։ Նրա դեղնած պատկերը, նրա աներկիւղ շարժումները, այնպէս անժամանակ ներս գալը քրդերի վրայ խիստ սարսափ գցեց. հէնց իմացան թէ միւս աշխարքից է եկողը։ Լեզուները ցամաքեցին, խօսք չըդուրս եկաւ բերաններից. ձեռները թուլացան, չըկարացին դաշոյն կամ շամփուր շարժել։ Իսկի չէին կարծում, որ այն միջոցին ադամորդի մէն մենակ կը համարձակուի գողադարան դարձած աւերակ քաղաքը մտնել, ուր լուսով մարդ վախենում էր ոտ դնել։ Մեր Աղասին Նրանցից չքաշուելով աչքերը մէկ այս կողմը խոժոռեց, մէկ այն. առանց ձայն ծպտուն հանելու շամփուրներից մէկը վերցրեց. վրայի խորովածից ո՛րը կերաւ, ո՛րը կրակը գցեց. աչքը տաճարի առաստաղին դարձնելով զարմանալի շէնքը աչքի անցկացրեց ու ափսոսալով գլուխը շարժեց։ Քրդերը մնացել էին փայտ կտրած, նստած. երբեմն որ Աղասին հերսոտ աչքերը նրանց վրայ չէր գցում, քիչ էր մնում տեղնուտեղը հալուէին։ Այնքան այսպէս քրդերին ղբաղեցրեց, շշմած պահեց, մինչև որ ընկերների ոտնաձայնը լսուեց ու իւր շունը ուրախ ուրախ ներս ընկնելով ոտներով փաթաթուեց։ Աւազակները նոր հասկացան, որ առաջներին կանգնողը սովորական մարդ է, իսկոյն վրայ թռան, որ իրանից թրերը դարսած տեղից վերցնեն, բայց առաջին

թուր վրայ բերողի գլուխը կէս եղաւ· ատրճանակները երկուսն էլ իրանց ոսերը ճարեցին։ Աղասին դաշոյնը ձեռն առած յարձակուեց ու գոռաց·

—Տղէրք, ձեր արևին մատաղ, Աստուած մեր կողմն է, դուռը կտրեցէք, որ մարդ չը փախչի։

Այս հայերէն բառերի վրայ կարծես տաճարի պատերը լեզու ստացան։ Բանից երևաց, որ ներսը պատերի տակ կապոտած հայ մարդիկ ու կնանիք կան։ Մի լեզու դառած աղաղակում էին.

—Ձեր եկած հողին մատաղ, ճար ունէք, մեզ ազատեցէք, աւազանի եղբայրներ։

Տաս, տասնուհինգ քրդստանցի հայ կապանքներից ազատուելով վեր թռան, քրդերի մնացած թրերը, տէգերը չամփեցին· թշնամիների աստղը թեքուեց· ութը կտորուել, երկուսն էլ մնացել էին վիրաւոր ընկած· տղէրքը սրանց կապեցին մէկ ձիու բնրի վրայ, որ չըշարժուեն· իրանք ման եկան, ականեցին եկեղեցու բոլոր անկիւնները։ Ղարսի կողսից թուրք փաշայի ժողովրդից անթիւ աղջիկ, հարս, տղայ գերի էին բերել· չըուաններով կապել թափել էին այնտեղ, որ առաւօտը լուսանալուն պէս տանեն Երևան, սարդարին ընծայ տան։ Աղասին ամենքի կապանքը իւր ձեռով արձակելուց ետ ասեց, որ միամիտ, հանգիստ լինեն։ Քրդերից մնացած իրերը տընդղեց, աչքի անցկացրեց, բացի զէնք ու զրահը,

ձիանոց զուգսերը, խուրջիններ էլ կային ոսկեղէնով, արծաթեղէնով լաւ լիք։ Աղասին սրտում Աստծուն գոհութիւն էր մատուցանում, որ իրան ցանկութիւն ներշնչեց Փամբակը թողնել, որը ռուսի ձեռի տակ համեմատաբար աւելի ապահով էր, ու գալ այս տառապեալ հայ բազմութիւնը արիւնխում քրդերի ճանկերից ազատել։ Ազատուած հայերը անչափ ուրախ էին, չէին իմանում ի՞նչպէս արտայայտեն իրանց երախտագիտութիւնը։ Աղասին այդ բանը նկատելով ինքն էր դէպի նրանց վազում, նրանց փարւում, հետները քաղցր խօսում, քաջալերում, որ այսուհետև քրդից, ղզլբաշից չը վախենան։

Այս զրոյցի վրայ էր Աղասին, որ ձիաւորի ոտնաձայն ընկաւ ականջով.

—Սրանք անպատճառ սպանուած քրդերի ընկերներն են լինելու, աւարի տեղից են գալիս։ Տղէ՛րք, կին երեխայ մի կողմ քաշեցէք, որ չերևան, ձայն էլ չը հանեն։ Վիրաւորուած քրդերի բերանը, ձեռն ու ոտը ամուր կապեցէք, թողէք քրդստանցի հայերից մինը մօտները կանգնի, միւս քրդստանցիք շուտ գան կրակի շուրջը շարուեն, որ եկող քրդերը կասկած չանեն։

Այս կարգադրութիւնը անելուց ետ Աղասին իւր քաջ ընկերներով եկեղեցու մուտքի աջ ու ձախ կողմը կտրեց։ Ընկերներից ամեն մինը թուրը հանած՝ պատն ի դուս կանգնած սպասելու էր, որ եկող թշնամուն ներս մտնելու ազատ տեղ

տայ։ Մի քանի րոպէ չէր անցել, մէկ էլ այն տեսան, որ 1010 կանչելով քաան ձիաւոր քուրդ ժամի դռանը ձիուց վէր եկան, սանձերը տուեին մի երկուսի ձեռ, որ մաա ածեն. միացածները ղորռալէ անկարգ իրար ետնից ներս դառան տաճարը. բայց չէին իմանում ով է, արդեօք՝ մարդ է թէ դև՞, որ շէմքը կոխելիս իրանց գլուխը կտրում է։ Էլ ժամանակ չը գտան վահանով պաշտպանուելու կամ տէգ բարձրացնելու։ Նրանի շուրջ նստողներն էլ մի կողմից շամփուրներ ա-ռած յարձակուեցին արբեն մտնողների վրայ, էլ ոչ բերան էին հարցնում, ոչ կողք և ոչ փոր։ Կըր-կին Աղասին էր, որ մէջ ընկնելով հայերի կա-տաղութեանը չափ դրեց. սպանածներին դուրս ածել տուեց. որը վիրաւոր էր, կապանքի տակ դնելով մի կողմ քաշեց։

Առաւօտը լուսացաւ։ Աղասու աչքը միաց զարմանքից յառած. տեսածին չէր հաւատում. այնքան խոր չէր կարդացել, որ միտը բերէր՝ թէ այս ի՛նչ քաղաք է, որ այսքան եկեղեցիք, պա-րիսպներ, աշտարակներ ունի։ Շրջեց մաա եկաւ բոլոր կողմերը, ամենն էլ պայծառաշէն, ամենն էլ անտէր ու անբնակ։

—Վա՜յ մեր օրին, գոչեց նա ժողովրդի մօտ դառնալիս, մեր ազգը այսպէս քաղաքներ է ու-նեցել, այսքան փառք ու մեծութիւն. այսօրուան օրը ամենն էլ կորցրել, ամենն էլ չար թշնամու ձեռին աւար է թողել։ Ա՛յ Ղարսի գաւառի հայ-

եր, թշնամին ձեզ տանից, տեղից հանելով այստեղ է քշել. եկէք վճռենք այստեղ մնալ, ահա մեր պապերից թողած եկեղեցիքը, մեր թագաւորների բերդերն ու գերեզմանները, ամենն էլ անտէր, անպահապան. մնանք ու ազատենք այս սրբութիւնները գողի, աւազակի ոտնահարութիւնից. Ջուրն առատ, տըներըն անթիւ, գաշտ ու հանգ ինչքան սիրտներս ուզում է. պատրաստի աղօթատներ. ժամեր դուք ձեր աչքով տեսնում էք, էլ ուրիշ բան չի հարկաւոր, մնացէք այս լռուած քաղաքը կենդանացնենք։

Քրդստանցի հայերը, որոնք օսմանցու ձեռի տակ ապրելու ու անթիւ հարկեր քաշելու ընտելացել էին, միաբերան պատասխանեցին.

—Աղա Աղասի, քեզ մեր գլխի չափ սիրում պաշտում ենք, դու եղար մեր ազատիչը այս գիշեր։ Բայց մեր վիզը կտրես, մեր հոգին հանես, այս ամայի դաշտում կենողը չենք. մեր հողը ուր ծնուել ենք, չենք թողիլ ու այստեղ մնալ։

Աղասին տխրած ասեց.

—Մի ազգ, որ այս աշխարհում իրան չի պահում, ինքը իւր կամքով թշնամու դերի է դառնում, արժան է որ Աստուած էլ նրան աչքից գցի։ Գնացէք, փոյթ չէ, ես իմ ընկերներով այստեղից դուրս եկողը չեմ, եթէ ձեզանից մնացող կը լինի, աչքիս վրայ տեղ ունի։ Խլած բաներից, կողոպուտից դուք էլ հաւասար բաժին ունէք, միայն թրերը, ղէնքերը կը մնան ինձ ու ընկերներիս։

Աղասին իւր խմբի անդամներին մի մի ձեռք քրդի շոր հագցրեց, որ ման գալիս անծանօթ մնան. քսանից աւելի երիտասարդներ միացել էին նրան. ամեն մինը խլուած ձիաներից մի լաւը ստացաւ, հետն էլ զէնք ու զրահ։ Մնացած գերիները մի քանի ձիաւորի ուղեկցութեամբ ապահով ճամբայ ընկան դէպի Ղարսի գաւառը, ուր տաճկաց փաշա էր նստում ու կառավարում։ Մնացողները մի քիչ հաց կերան ու սկսան պարիսպների տակերը, եկեղեցիների մէջը սկանել. որ չըլինի թէ քուրդ կամ թուրք պահուած լինի։ Բնակութեան տեղ որոշելու համար Աղասին ման եկաւ, շէնքերը նայեց ու յարմար գտաւ քարափի մօտի աշտարակը, որ հարաւի կողմն էր. պատուիրեց որ մաքրեն, իստակեն. մի երկու ձիաւոր էլ ղրկեց Շորագեալ, որ հաց առնեն բերեն։

Աղասին, որի զարմանալի ըմբռնող հոգու համար ամեն մի քար գիրք էր, ամեն մի ապառաժ մի պատմութիւն էր, ամեն մի բերդ ու քանդուած ժամ, որոնցով սար ու ձոր լիքն էին, մի մի կենդանի վարժապետ էր, Անի քաղաքի մէջ երկար վերև-ներքև պտըտելուց ետը բարձրացաւ մի աշտարակ, որ Արփաչային էր նայում։ Արևի մայր մտնելու ժամանակն էր, աչքը գցեց գետի արծաթանման, կեռ ու մեռ հոսող ջրին, ընդարձակ դաշտերին, հեռու մշուշապատ հորիզոնին ու վշտահար սրտից այս խօսքերը հանեց.

Վա՜յ այն ազգին, որ աշխարքումս անտէր ա,
Վա՜յ այն երկրին, որ թշնամու գերի ա,
Վա՜յ այն ազգին, որ իւր կեանքը, աշխարքը
Չի պահպանիլ ու թշնամու ձեռ կը տայ։

Ձեռը ծնօտի տակ դրած, ողջ աշխարհի ցաւերն ու վշտերը սիրտն ամբարած՝ մէկ քանի րոպէ լուռ նայեց ննդնդանման ձորին, ու վերջը թշուառ գլուխը բարձրացնելով աչքը գցեց կարմրավառ արեգակին. խոր մորմոքուեց ու հառաչեց.

Ա՜խ, արեգակ, բա՛րի հրեշտակ, մեր մտի,
Ի՞նչ ես կանգնել, սիրուն աչքդ բաց արել.
Հայի համար որ դուս չըգաս դու իսկի,
Դարդ չի անիլ, վաղուց է սատղը թեքուել։

ԺԲ.

Մի օր իրիկնադէմին Աղասին դարձեալ նըստած էր աշտարակի վրայ, տեսաւ որ ձորում անագին բազմութիւն ոտով, իրանց ապրանքների հետ, ձի, ոչխար խառը սարից ձորն են թափում։ Նրանց հալածող-ծեծողներն էին քուրդ ու թարաքամա ձիաւորներ՝ թուով մի քանի հարիւր։ Ղարսի դաշտերից այդ անհամար ընտանիքներին քշելով տանում են Երևան, որ սպանեն կամ հաւատները փոխել տան։ Ձիաւորներից իւրաքանչիւրի դաւաքին տղայի կամ աղջկայ պատկեր է երեւում. անշուշտ այդ էլ վերցրել են իբրև որս։

—Եա Տէր Աստուած, դու ինձ օգնական, կանչեց Աղասին ինքն իրան. նստած տեղից զգու-

շութիւնով ձեռով արեց ընկերներին, որ իրանց ցոյց չը տան, չը շարժուեն։ Ինքը աշտարակից իջաւ ու կուզիկուզ նրանց մօտ հասաւ առանց թշնամուց նկատուելու։ Քուրդ ու թարաքեամա գետի ափին վէր եկան, երեսները լուացան, նամազ արին։ Գլխաւորի հրամանով գելիների մէջ ինչքան որ յոգնած ծերեր, պառաւ կնանիք կային, ամենին ջոկելով առաջ բերին, չոքեցրին. երևի ուզում էին իրիկնահացը վայելելուց ետը նրանց գլխները կտրեն, թողեն այդտեղ. որովհետև արագ գնալու, վաղ տալու ուժ չունենալով՝ քաուանի ընթացքը դանդաղեցնում էին։

Մինչև թուրքերը մի քանի ոչխար կը մորթէին, կը մաշկէին, կրակը չաղ կանէին, մութն ընկաւ, սար ու ձոր բռնեց։ Մեր քաջերը թուր ու հրացան պատրաստ ձեռներին չոքեցին, աղօթք արին՝ կարծելով թէ կռուի միջոցին մեռնելու են. իրար վերջին բարով ասին, ձիաները մէկի պահ տալով իրանք զգոյշ առաջ խաղացին։ Հինգը մի կողմից գնաց, հինգը միւս կողմից, այն մնացած տասը հոգին այնպէս պէտք է գնային. որ բոլորին մէջ անէին։ Աղասին պատուիրեց որ ոչ մի թուրքերէն կամ հայերէն խօսք բերաններից չը հանեն, այլ քրդերէն հարա՛յ տան, հաւա՛ր կանչեն։

Հէնց սուփրի ու խորովածի սարքին ժամանակ, երբ ամենն էլ գէնք, բան թողած իրանց որսին էին տանջում, մեր տղերանց հրացանները տրաքեցին ու քսան հոգի թշնամիներից անշունչ

պարկած մնացին։ Այս ճռռոցի վրայ ձիանը խըրտ-
նեցին, ընկան մարդկանց վրայ, կոխ տուին.
թշնամի բազմութեան մէջ անասելի ահ ու շփո-
թութիւն տիրեց. չը գիտէին իրանց վրայ յար-
ձակւողը ով է և որտեղից է. աւերակ Անիի մի-
ջից այդ իսկի չէին կարծում, ամենալաւ միջոցը
փախչելը գտան ու սկսան աջ ու ձախ փախչել։
Աղասին ընկերների հետ ձորի ճամբէն էր կտրել,
միւս կէսը գերի հայերից շատին իրանց միացրած
բռնել էին ձորի ետևը։ Զոքած ծերերից որը իւր
տուն ու ձեռը արձակ տեսաւ, թըրի վազելով ա-
ռիւծ դարձաւ։ Ղարսեցի հայերը այս ձորերը լաւ
ճանաչում էին, գիտէին մուտը որն է, ելը որը.
թշնամու գլխին այնպէս կարկուտ ածեցին, որ
իսկի չը տեսած։ Բանից դուրս եկաւ, որ այդ
ժողովրդին քշողը Նաղի խանն ու Օքիւղ աղէն
են, որոնք ձիաներ ճանկելով մի քանի հոգու հետ
դուրս էին փախել։ Կոտորուածը կոտորուած էր,
ինչ որ ողջ էր, մնացել էին ձորի միջումը կանգ-
նած։ Սրանց շըջապատելով այնքան պաշարած
պահեցին՝ մինչև որ լուսը բացուեց։ Անչափ ձիա-
ներից վաթսունն էին մնացել, էլ թողած զէնքին
ու հագուստին, ձիաներին թիւ չը կար։ Աղատ-
ուած Ղարսեցիք սկզբում այնքան շշկլուած էին,
որ չէին հարցնում, թէ ով է իրանց ազատարարը։
Աղասու մարդիկ ձիանը բերդից ներքև էին բե-
րում. վախեցած ժողովուրդը կարծեց թէ թըշ-
նամի է եկողը, կրկին իրար գլխով դիպաւ։ Ա-

գասին շտապով եկաւ դէմքերը ու սիրտները հանգստացրեց։ Նոր իմացան գերուածները, որ այդ պարթև հասակով ոջմինն է իրանց ազատողը. աչքները մնաց նրա ազնիւ շարժուածքի վրայ, սկսան նրանով փառուել, օրհնել, արևշատութիւն խնդրել։ Նրանց փաղաքշանքին վերջ չէր լինիլ, եթէ Աղասին ինքը կարճ չը կտրէր։ Ընկերներից մէկը եկաւ իմացրեց, որ Հասան խանը զօրքով Ղարսի կողմերից ետ է դառնում՝ իսկոյն մի երկու ձիաւոր Գիւմրի ուղարկեց, միւս ընկերներին պատուիրեց, որ առանց ժամանակ կորցնելու տանեն ընտանիքները բերդում տեղաւորեն կամ ձորում ամուր տեղ պահեն. ապրանքներն ու ոչխարը դուրս քշեն տանին Շորագեալի հանդը։ Գերի բռնած քրդերին ու Թուրքերին զինաթափ արած կապեցին ու թափեցին բերդի մի մասի մէջ։ Ազատած ժողովրդի մէջ ինչքան տղամարդ կար, ամենքին թուր ու հրացան տուեց, գլխին հաւաքած սարն ու դուս բարձրացաւ։

Արեգակը երկնքի մէջտեղը գրկաչափ թեքուել էր, որ բերդի մէջ եղողները փոշի նկատեցին։ Փոշին քիչ քիչ բարձրացաւ ու ամպի պէս Անու ողջ դաշտը բռնեց։ Այդ բանը ձորից նոյնպէս տեսել էին, սպասում էին, առանց ձայն ծպտուն հանելու։ Թշնամին անտեղեակ գալիս էր խառն ու խուռն. հետը թնդանօթ չունէր, դարդակ ձիաւորներն էին առաջ ընկել, որ շուտ Երևան հասնելով աչքալոյս տան, թէ Ղարսն ա-

ռան, քանդեցին ու շրջակայ բոլոր գիւղերը քոչեցրած բերում են։ Փոշու ամպի հետ Հասան խանը քաղաք մտաւ, ձիուց վէր գալով վրան խըփել տուեց։ Ամենն էլ ճամբայ գալուց յոգնած ջարդուած էին. քանը մէկտեղ, հարիւրը միւս տեղ եափնջիները փռեցին, Նամազ անել սկսան։ Առաջին չոքելում ուզեցին մեր տղէրքը յարձակում անել, կոտորածն սկսել, բայց Աղասին իբրև աւելի փորձուած՝ մատով նշան արեց, որ տեղներից չը շարժուեն։ Պարսիկների մէջ էր մեծացել, գիտէր որ մինչև Նամազը կէս չըլինի, ժամանակ չի։ Տղէրքը համբերեցին՝ մինչև նրանք մէկ էլ ձեռները ականջներին դրին, չոքեցին, գլխները գետնին կպցրին՝ յանկարծ բերդից հրացանները ճռռացին, ճըճռացին։ Սար ու ձոր թընդաց, գըրմփաց. ձիանը թոկ ու սանձակոթ կըտրելով հուշտ եղան, բաշն ու աքին ցից, սինգ-սինգ փախան։ Նախապաշարուած պարսիկները այս պատահմունքը հրաշքի ու քաջքի տեղ ընդունելով սարսափեցին ու գլխաբաց, բոբիկ ընկան ձորն ի վէր, քարէքար ընկան։ Երկու հազարից աւելի եափընջի, թուր-հրացան թողին գետնի վրայ։ Հայ տղէրքը ձոր ու քարափ բռնած ունէին. այնքան հրացանը չէին բանացնում, որքան թուրն ու դաշոյնը։ Հասան խանի օրհասը լաւ եկել էր, տեղն էր նրան շնչահան անելը. բայց զարմանք, Երևանի կողմից երկու ձիաւոր լոյս ընկան, ներքև իջան, գլխաբաց խանին ձիու

վրայ դնելով փախցրին. ոտաւոր հայերը վազեցին, չը կարացին ետնից հասնել։ Տատերը սրից մեռան, մի մասը քարափի գլխից թափուեցին, որն էլ քարի, մացառի տակ թագ կացան։ Մեռած մարմինները ձորը շպրտեցին, աւարը կողոպուտը բաժանեցին իրանց մէջ։ Օրը դեռ չէր մթնել, Աղասին ամեն տեղ պահապան դրեց, ժողովրդին կանչեց, նստացրեց. միատեղ իրիկնահաց կերան ու վերջը սկսեց հարցնել, թէ ի՞նչ է նրանց միտքը, ու՞ր են ուզում գնալ։ Աղասու ցանկութիւնն էր նրանց համոզել, որ մնան այդտեղ, աւերակ դառած քաղաքը շէնացնեն։ Սրանք նոյնպէս պատճառներ բերելով չուզեցին մնալ։ Աղասին շատ վշտացաւ, թէ ինչ՞ու բոլորը հրաժարւում են Անիում բնակուել։ Գլխաւոր պատճառն այն էին բերում, թէ Յովհան Երզնկացին անիծել է։

Այս մտատանջութեան մէջն էր, երբ աչքը վերև գցեց ու բոլոր դաշտը բազմութիւնով լիք տեսաւ։ Հասան խանի ձեռով քոչացրած հայ ժողովուրդն էր այդ, որին խռկած Երևան էին տանում։ Աղասին երկու ոտով վեր թռաւ, ձայն տուեց իւր ձիաւորներին, երկու հարիւր հոգի քամակը գցած հասաւ դաշտը, ուր բազմութիւնը դեռ նոր վէր եկած, քոչ քոչի վրայ թափուել էին։ Ժողովրդին քշելու հոգը խանը յանձնել էր մի քանի հարիւր զինուորի. սրանք կարծեցին թէ Աղասին և ընկերները ռուսներ են, սրտապատառ

եղած թողին ամեն ինչ, թնդանօթ ու այլ հրա-
գէն և թափուեցին ձորը։ Այդ ցաք ու ցրիւ ե-
ղածներից հազիւ մի քանի հոգի ձեռ ընկան։
Գիշերը խաղաղ անցկացրին. առաւօտը լուսացաւ,
գերի ու ազատիչ իրար երես պարզ տեսան։ Ա-
ղասին այն ժողովրդին եւս յորդորեց, շատ խնդրեց
որ միան իւր հետ, Անի քաղաքը չէն գցեն, իրանց
պապերի հոգիները մխիթարեն։ Նախապաշարուած
բազմութիւնը ոչ մի կերպ չուզեց անիծուած
տեղը միալ. ուշք ու միտքը իւր հող ու ջրի վրայ
էր։ Այնքան ղավռացին, թեր ու դէմ առարկու-
թիւններ արին, որ Ղարսի փաշէն զօրքով եկաւ
իւր ժողովրդի ետնից։ Տեղեկանալով Աղասու
քաջութեանը՝ մեծ շնորհակալութիւն արեց նրան
ու խնդրեց որ իւր հետ Ղարս գնայ՝ զօրքի գլ-
խաւոր լինելու համար։ Աղասին չուզեց, աւելի
լաւ համարեց իւր ընկերներով միալ Անի քաղա-
քում ու Շորագեալի կողմերը պտըտել, պարսիկ-
ներին նեղը գցել։

ԺԳ.

Հասան խանը ճիշտ է սարդարի փոքր եղ-
բայրն էր, բայց անգթութեան մէջ նրանից շատ
առաջ էր. մինչև 1825 թ. հազար անմեղ գլուխ
կերել, անթիւ ընտանիքներ կործանել, քաղաք
ու գիւղ աւերել, Ղարս ու Բայազէթ դաւառները
հինգ վեց անգամ ոտի տակ էր տուել։ Նրա մտադրու-
թիւնն էր աշխարքը գարհազարը գցել. Նադի խա-

նին հրամայեց որ իւր ղարափափախ ձիաւորները վերցնի, գնայ Ղազախ գաւառի բերանը բռնի. քրդերի Օքիւզ աղին էլ պատուիրեց, որ իւր մարդկանցով գնայ Ղարսի սահմանը պահի. իսկ ինքը իւր զօրքով մտաւ Աբարան, որ յաջող դէպք գտնելուն պէս խփի Փամփակի վրով՝ ռուսի սահմանն անցկենայ ու այնտեղի ժողովրդին իւր ձեռի տակ գցի։ Ինչ որ բերդեր կային, ամրացրել էին, Երևանում, Սարդարապատում բաւական զօրք ու պատրաստութիւն թողնելով մնացածը հետները վերցրին։

Այս միջոցին Երևան մտնողը հէնց կիմանար, թէ ջրեհեղեղը նոր է եկել, աշխարքս քանդել։ Աբարան, ուր արիւնկեր Հասան խանի մարդիկն էին գայլերի պէս պտտում, դառել էր սպանդանոց. օր չէր անցկենում, որ սարից, դաշտից մարդ չը բռնեն ու խանի առաջ չը բերեն։ Առանց ադամորդի սպանելու նրա օրը օր չէր. մէկի աչքերն էր հանել տալիս, միւսի՛ քիթ ու պռունկը կտրում, երրորդի ոտն ու ձեռը պոկել տալիս ու վիրաւոր մասը զաղած իւղի մէջ դընում, որ իբր արիւնը դադարի։

Նաղի խանի ու Օքիւզ աղի ծառաները ճամբէքը կտրելով ամենին կողոպտում էին, այն հայերի տներն էին աւերում, որոնց հացը երկար տարիներ վայելել էին։ Այս բոլորը անում էին գողիգող, այնպէս ղգոյշ էին բռնում, որ կապուտ կողոպուտի ձայնը ռուսի հողում չըլսուէր։ Սար-

դարը Արարատ ամառանոց գալիս Փամփակի սա-
ւարգամիրդին, այսինքն ռուս մեծաւորին ընծա-
ներ էր ղրկում, աղուէսի լեղու քանեցնելով հա-
ւատացնում, որ ինքը ռուսի ամենամեծ բարե-
կամըն է։ Այդ էր պատճառը, որ Երևանի կողմը
պատահած անզգթութիւնների մասին եթէ գրով
տեղեկացնում էին, Ղարաքիլիսի կողմի ժողո-
վուրդը զարմանում ծիծաղում էր։ Իսկ Փամփա-
կի հայերը պարսկի խորամանկութիւնը լաւ իմա-
նալով՝ ամեն տեղ ընդդիմադրութեան պատրաս-
տութիւն էին տեսել։ Պարնի գիւղը, Գիւմրին բեր-
դեր ունէին. ժողովուրդը պատերը ամրացրել ու
ներսը պատսպարուել էր։ Ղըղարաքիլիսէն բերդ
չունենալով, ինչ որ սայլ ու գութան կար գոներին,
հաւաքել էին, իրար վրայ կիտել, ունեցած չու-
նեցածը այնտեղ ամրացրել, ուրիշ գիւղերի ժո-
ղովուրդ էլ իրանց մէջ առել։ Ինչ որ հնուց մը-
նացած թուր ու հրացան կար, ամենն էլ սրբել
սարքն էին դցել, որ պէտք ածեն։ Գիշեր ցերեկ
զինավառ պահպանութիւն էին անում իրանց
ապրանքներին ու ընտանիքներին։

ԺԴ.

Այս միջոցներին էր, երբ Հասան խանը ա-
րևմուտքից եկաւ, Աբաս միրզէն-Ֆաթալի շահի
աղէն արևելքից յանկարծ յարձակում արին ու
ոտ դրին ռուսի սահմանի վրայ։ Մեր կողմը ա-
մենևին լուր չունէին. մինչև ռուսները զօրք կը

ժողովէին, որ նրանց դիմադրեն, զըլըբաշը կա-րող էր ողջ Վրաստանը ոտի տակ տալ, եթէ հայերը նրա ճամբէն ամեն տեղ չը կտրէին։ Կեանքը անապահով էր Թուրքերի ձեռից, մանաւանդ սարերում, եայլաղներում ուզում էին իրանց գաղանութիւնը բանացնել, բայց Փամբակի, Լոռու, Շամշադնի, Բայազէթի հայերը ընտիր նախնիների տղամարդութեան հոգին միտ բերելով, պատահած տեղն էլ չէին խնայում թշնամուն։ Այդ էր պատճառը, որ Թուրքերը այդ ձորերով անցկենալիս այնքան լեռ քարափից, գետի կատաղութիւնից չէին վախենում, որքան քարերի տակից վզզող գնդակներից։ Դսեղեցի Յովակիմը, Լոռու ձորերի Աստուածը, հերիք էր, որ մէկ քարի ետևից ձայն տար, հարիւր Թուրքի լեղին ջուր կը կտրէր. Ութ եղբայր ունէր, մէկը քան միւսը աժդահայ. բազմաթիւ քաջ տղէրք քամակը գցած վիշապի պէս ձորերում ու սարերում պըտըտում էր։

Ու՞մ մտքից կերթայ այն հսկայ կերպարանքը, այն գեղեցիկ պատկերը, այն անօրինակ քաջութիւնն ու սիրտը, որ շուլաւէրցի Սոսի աղէն ու Մելիք Օհանջանն ունէին։ Երբ լուր հասաւ թէ պարսիկները յարձակուել, իրանց գիւղից քըսան հինգ վերստ հեռու, գերմանական գիւղը կողոպտել են, իսկոյն քառասուն կտրիճ տղէրք քամակները գցած հրեղէն վիշապի պէս ընկան Քաշվէթի ու Բոլնիսի սարերը, որ թշնամու ա-

ռաջը կտրեն։ Այն ժամին հասան, երբ քիւրդ Օքիւզ աղէն գերմանական գիւղն տակն ու վրայ արել, գերիների կէսը կոտորել, կէսն առաջն ա-րել տանում է։ Այս մէկ բուռ հայերը արիւն աչքները կոխած՝ ընկան անթիւ բազմութեան եռնից։ Քուրդ ու ղարափափախ գերիները տուին մի քանի մարդի ձեռ ու իրանք շուտ ետ դառան։ Այս տեսնելիս վրացի Մովրովը իւր մարդիկն ա-ռաւ, փախաւ, որ գլուխն ազատի. Մնացին քաջ Սօսին ու իւր ընկերը. քարի տակ ամրանալով իրար ձայն տուին.

—Վախկոտութիւնն ու թուլութիւնը տղա-մարդի համար ամօթ է, քաջութեամբ մեռնենք, որ մեր որդիքն էլ իմանան, թէ մենք էլ սիրտ ենք ունեցել, մեր երկրի պատիւը պաշտպանել, մեր աշխարհի սիրով մեռել։ Այս անմաքուր արիւնը էլ ինչու համար է, որ այսպէս օրը չենք թափել։

Ծանօթ թուրքերը ձայն տուին.

—Ա՜յ Սօսի աղա, մենք քու աղ ու հացը շատ ենք կերել, մեր աչքը կը բռնի, թէ քեզ վրայ թուր բարձրացնենք. քեզ ողջ առողջ ճամ-բու կը գնենք, արի մի անիլ, գլուխդ մահու մի տալ, ափսոս ես։

Քաջ Սօսին կասկած տանելով՝ չը լինի թէ իրանց բռնեն նենգութիւնով ու գերի տանեն, ուշ չըդարձրեց թուրքերի յորդորին, հրացանը երեսը կալաւ ու նշանի բռնեց Օքիւզ աղի տղին։ Հրա-

ցանը տրաքեց թէ չէ, որսը ձիու շլընքով կաթեց։ Թշնամին կատաղեց ու սկսեց յարձակուել այն քարի վրայ, որի տակ թագնուած էին կրտրիճները։ Թշնամու գէմ հրացանները բանացնելով տաս, տասնուհինգ մարդ սպանեցին՝ մինչև վառօդները հատաւ. ապա թուրները հանելով ընկան առիւծի պէս գազանների մէջ։ Մինչև շունչ փրչելը, մէկ տաս թուրք ու քուրդ էլ թրի կերակուր արին ու վերջը իրանք Աստծուն մատաղ գնացին։

## ԺԵ.

Գնանք կրկին մեր սիրելի Աղասու մօտ։

Մենք նրան թողինք Անի քաղաքում. սովորաբար ընկերների հետ դուրս էր գալիս, սար ու ձոր չափչփում, որ պարսիկների պատահի ու յարձակուելով արիւնները ծծի։ Իրան շատ սառնասիրտ էր պահում, ընկերների մօտ ամենևին վաթանի, ծնողների անունը չէր յիշում. Նրա բերանի մշտական խօսքն էր՝ վրէժխնդրութիւն պարսիկներից։

Մի օր շրջելիս մենակ էր ընկել. հեռուում նկատեց Մասիսի պատկերը, իսկոյն սիրտը փըլխուեց. էլ չը կարաց կանգնած գիմանալ, նստեց մէկ թփի տակ ու սկսեց այս խաղն ասել.

Սար ու ձոր ընկած մէկ չոր թփի տակի
Գետնին նայելով մնացել եմ նստած.

՝Ձեռս ծոցումս, գլուխս մէկ լեռ քարի,
Տուած լալիս եմ օրս խաւարած։
Ամպերն առաջիս, սարերն ետևիս,
Քեզ մտիկ տալով, ո՜յ իմ քաղցր Մասիս.
Այլի արցունքով էրուած խորոված
Երեսիդ նայեմ, մնամ քարացած։
Ծնողք, ազգականք հեռու ինձանից
Լուսնին նայելով ձեր սէրն յիշելով.
Եարաբ ե՞րբ կըլինի, որ ես ձեզանից
Իմ կարօտս առնեմ ձեզ ջա՜ն ասելով։
Նազլո՜ւ, իմ Նազլու, աննման Նազլու,
Սիրտս խորովի անուշ յիշելով,
Նազլո՜ւ, իմ Նա՛զլու, հրաշալի Նազլո՜ւ
Աղասին քեզ տայ իւր վերջին բարով։
Սարերի գոշին, ձորերի միջին
Վա՜յ գլխին տալով քու խեղճ Աղասին.
Երեսիցդ զրկուած, քո սիրով մաշուած
Տատրակի նման փշի վրայ նստած։

Այս խաղն ասելուց ետ նզզել էր Աղասին ու տեղնուտեղը քնել։ Ընկերները ման գալով եկան գտան. Նրա կողքին այնքան սպասեցին մինչև քնից վեր կացաւ, ետոյ առան հետները գնացին իրանց օթևանը։

## ԺԶ.

Այս միջոցին էր, որ Խլղարաքիլիսէն ոտի կանգնել, չէր ուզում պարսկին գլուխ թեքի. միտքն այն էր, որ քրիստոնեայ թագաւորի ձեռի

տակ մտնի։ Հասան խանը այս լուրն առնելուն
ինչպէս կատաղի գազան դուրս պրծաւ, որ ողջ
գիւղը բրդի, կտոր կտոր անի։ Եկող զօրքից Տօ-
րագեալի երեւը մթնեց, ծուխն ու մուխը ամեն
կողմ բռնեց. հայերի տաւարը քշեցին տարան,
գիւղը կրակեցին. ամեն կողմ դժողք էր ու տար-
տարոս։ Անթիւ անգամ պարսից սեւագունդ զօրքը
զու անելով յարձակուեց սանգարի վրայ, բայց
ներսում պատսպարուած հայերը սիրտ սրտի,
քամակ քամակի տուած իրար ձայն էին տալիս.

—Մեռնենք այսօր ու մեր ընտիր պապերի
փառքին հասնենք։ Միք վախիլ, ընկերներ, միա-
ցէք, թող մէկ սուր փրթի ու մէկ հող մեզ թա-
ղի. կռուենք մինչև վերջին շունչը, նամարդ է
ետ կենողը։

Այս սիրուն միաբանութիւնն էր պատճառը, որ
պարսիկները ամեն անգամ յարձակուելիս հարիւր-
ներով կոտորւում էին, իրանք իրանց դիակների
վրայով փախչում։ Շունչ էին առնում, կրկին
վրայ թափւում, բայց կրկին մի բուռ միաբան
հայ ժողովրդի հրացանների համն առնում, կրկին
ամօթով ետ փախչում։ Ոչ Նադի խանն էր կա-
րողանում շնորք ցոյց տալ. ոչ Օքիւզ աղէն, ոչ
Սվանղուլի խանը. հէնց որ մօտենում էին, տան
դռներից, սայլի արանքներից հրացանները ճըռ-
ճըռում էին։ Հասան խանը Երևանցի Սահակ ա-
ղին ղրկեց, որ գնայ ապստամբ գիւղացոց յոր-
դորի, գան իրան հնազանդեն, ուսից ձեռ քա-

շեն, թէ չէ վերջը կըփոշմանեն։ Սահակ աղէն հրամանից դուրս գալ չէր կարող. հայ զօրաբաժինը ետև գցած մօտեցաւ սանդարքին, որ խրատելով ժողովրդին համոզի, խելօք կենան. բայց ինչ նկատեց—անթիւ հրացանների բերաններ ցըցուեցին նրա դէմ.

—Գնա, հեռացիր, Սահակ աղա, գոռացին միաբերան, շնորհակալ եղիր երեսիդ մեռոնին, որ թողում ենք շունչդ վրէդ ետ դառնաս։ Մեր թշնամուն մենք լաւ ենք ճանաչում, թող նա առաջ գայ, քու ինչ գործն է, որ խառնւում ես։

Այս հակառակութիւնը որ Հասան խանը լսեց, հրաման արեց զօրքին յարձակուել. ոչ թրի մտիկ անել, ոչ հրացանի. վճռեց կամ այդ օրը մեռնել կամ Ծլղարաքիլիսէն տակն ու վրայ անել։ Ինքը թուր հանած ուզում էր վազի, Օքիւզ աղէն, Նաղի խանը խնդրեցին, պաղատեցին. որ ինքը վրանում նստի, կամ սարիցը մտիկ անի, թէ ինչ հրաշք են գործելու իւր ծառաները։ Նրանց խընդիրն ընդունեց, բայց մաղձոտ ունքերով կարգադրեց հետևեալը.

—Ինչ որ հայ ձիաւոր ու զինուոր կան, առաջ գցեցէք, դուք ետնից գնացէք, թող առաջ նրանք կոտորուեն։ Մի քանի ձիաւորի հետ բարձրացաւ լեառը, գիտակը ձեռն առաւ, մէկ քարի վրայ պըպըզեց ու ձեռով նշաններ, հրամաններ տուեց։ Օքիւզ աղէն իւր քրդերով, Նաղի խանը ղարափափախներով, Սվանդուլի խանը իւր զին-

Տների մէջ լացի ծով էր դարձել, մէկը դուռն էր փակել, որ կրակում այրուի, միւսը աչքը խփել, որ ցաւ չը տեսնի։

Այս միջոցին սարի գլխին ամպ էր որ տրաքեց, թէ երկինքը հրաշքով բացուելով ծոցից հսկաներ հանեց,—մէկ էլ այն երևաց, որ քաջ Աղասին քսան ձիաւորով վերևից թռած, քրդի շորերով սարին վրայ պրծաւ։ Գազան Հասան խանը նրանց քուրդ կարծելով, հէնց որ մօտեցան՝ քարերով ընկաւ, պարզ տեսնում էր թէ Ջաւար խանի ու Թուրք բէկերի գլխները իրար ետնից ինչպէս են թռչում. Գիւմրու գաշտից նրա ականջն ընկաւ ռուսի փողի ու թմբուկի ձայնը. ահա զինուորների շարքերը իրանց կապիտանի հետ արծուի պէս վրայ հասան ու իւր զօրքին մէջ առան։ Թնդանօթը մէկ կողմից, թուրը միւս, մինը առաջից, միւսը ետևից հնձեցին. արիւնը գետի պէս հոսում էր։ Հազար աչք ուզեց, որ Աղասուն տեսնի, հիանայ նրա պատկերով, շնորհակալութիւն անի, բայց քաջը յանկարծ անյայտացաւ, առաջներից բոլորովին կորաւ։

ԺԷ.

Նա Հասան խանի հետումն էր, որ այսօր աւելի իւր ձիու քան թէ իւր քաջութեան շնորքով գլուխը պրծացրած փախչում էր։ Բայց երբ յանկարծ աչքը բարձրացրեց ու Աղասուն ձիու ականջը մտած՝ ետնից քշելիս տեսաւ, ոտն ու

ձեռը թուլացան. ուզում էր ձին բաց թողնի ու քարափից իրան Արփաչայի ձորը գցի կամ իւր թուրը իւր սիրտը խրի, որ չասեն թէ Հասան խանին մէկ հասարակ հայ սպանեց։ Այսպէս կեանք ու մահի հետ կռւում էր. վերջին ջանքն այն էր, որ վզից հրացանը հանի, իրան հալածողին սպանի. արիասիրտ Աղասին էլ միջոց չը տուեց, ետնից հասաւ, թուրը կրծքին դէմ արեց.

—Վեր գցիր ձեռիդ հրացանը, թէ չէ այս րոպէիս մէջիցդ կէս եմ անում։ Էլ ձեռիցս չես ազատուիլ, հայակեր շուն։ Մի՛ վախիլ, քեզ այստեղ չեմ սատկացնելու։ Իմ թուրն ափսոս է, որ քեզ պէս թշուառ ճիճուին սպանի։ Քեզ այն հայերին եմ տալու, որոնց որդիքը դու կոտորել, տները քանդել, աչքերը կուրացրել ես։ Անթիւ գլխներ ես կտրել, Ղարս, Բայազէթ աւերել, ափսոս չէ՞, որ քաջ գլուխդ քարի տակ մնայ։ Դու մեր անտէր հայերին քու աղօթարանի կողմը շատ ես դա՛րձրել ու շլինքը կտրել, հիմի ինքդ դարձիր դէպի մեր աղօթարանը, երեսիդ խաչ հանիր։ Չօ՛քիր, խա՛ն, տէրտէր չեմ, բայց պետը մօտիկ է, ջուրը կըքա՛շեմ քեզ, Հասան անունդ կը դնեմ Օհա՛ն։ Շուտ չօքիր, թէ չէ տեսնում ե՞ս այս թուրը, գլուխդ սոխի պէս կը թռցնեմ։

Քուրդ, օսմանցի ասէր այս խօսքերը, այնքան ցաւ չէր, բայց այսպէս թուք ու մուր մի հա՛յից ստանա՛լ, որին մինչև այդ օրը խոտ ու աղբ էր համարել։ Աչքերը արիւնը կոխեց, մեռած հո-

գլին ետ եկաւ, ատամները զրճտացրեց, աչքերը կայծակին տալով տեղից վեր թռաւ ու կատաղածի պէս դաշոյնը հանեց, վրայ պրծաւ.

—Հայի շո՛ւն, դո՛ւ էիր մնացել, որ Հասան խանի վրայ ոտ բարձրացնես. այդ ո՞ւմ տեղ ես դնում Նրան։ Ա՛յ հողը գլխիդ, Հասան խան, այս ի՞նչեր ես լսում. հազար հազար մարդի փոր վէր ածես ու վերջը դաս մէկ հայի կտորի առաջ այսպէս կուչ գաս։

Այս ասեց ու կատաղութիւնով դաշոյնը Աղասու վրայ այնպէս ուժով շպրտեց, որ եթէ ձի՛ն չէր խրտնել ու Աղասին գլուխը կռացրել, սուրը ցըցուելու էր սրտի մէջը։ Աղասին այսպէս բան իսկի մտքով չէր անցկացրել։ Զայրացած գոռաց.

—Արիւնկեր գազան, այգպէս հօ չեն խփիլ կամ գողի պէս վրայ պրծնիլ. քեզ պէս գազանին գազանով պէտք է պատժել. դեռ առաջ ձիուս շնորքը ճաշակիր, ետոյ կը տեսնես թէ ի՞նչ թուր է վրէդ խաղում։

Այս ասելով ձիուն մտրակ քաշեց։ Կատաղած ձին փրփրած բերանով ծառս եղաւ ու թռաւ։ Խանի լեղին ջուր կտրեց. բաղդը բանեց Նրանով, որ ձին վրովը թռաւ, ինքը մնաց մէջտեղը անվնաս։ Մինչև Աղասին ձիու սանձը կը քաշէր, որ ետ դառնար, Հասան խանը հոգի առաւ, ատրճանակը հանեց։ Ջիու ճակատը ետ գարձնելն ու ատրճանակի տրաքելը մէկ եղաւ։ Սիրուն կենդանու երկու քթածակերից արիւնը պրծաւ, ա-

ռաջի ոտների վրայ չոքեց ու դետնին կպաւ։ Աղասու աչքերը պէծպէծին արին, արիւնը սըրտումը թան դառաւ։ Մինչև ոտը ասպանդակից կը հանէր, մինչև ձեռը թրին կը տանէր կամ ձիու տակից կը բարձրանար, Հասան խանը շտապեց, երկար կեռ թուրը շողացրեց Աղասու երեսըն ի վեր։ Աղասու մէկ ոտը դեռ ասպանդակումըն էր, ձախ ձեռը իւր թրին հասցնելով թըշնամու դէմը բռնեց, աջ ձեռը տարաւ խանի գլխով պատ տուեց, միրուքի մազի տեղ ծնօտը ճանկն ընկաւ. բութ մատը բկի տակին պահած, ծամելիքները այնպէս սեղմեց, որ կէնդ ու մէնդ հին ատամները ճռճռացին, փշուր փշուր եղան։ Գլուխը հաւի կատարի պէս պտտելով այնպէս ոլորեց, որ անարկու խանի գլուխը մնաց Աղասու մէկ ոտի տակին, փորը միւս։ Գրպանից թաշկինակը հանեց, համ սկսեց աջ ձեռով վէրքը կապել, համ էլ հաւատի քարոզ կարդալ։

—Հայի արիւնի ծարաւ էիր, անհոգի խան, գէ կշտացիր։ Այս ասելով կուռը այնպէս էր պահում, որ արիւնը պարկած խանի աչքերին ու բերանին թափուի։—Մինչև հայ չըդառնաս, մինչև երեսիդ խաչ չը հանես, չես պրծնիլ իմ ձեռից։ Ես այսօր քո Լուսաւորիչն եմ դառնալու։

Վէրքը կապելուց ետ ձեռը շարժեց, որ արիւնը կրկին իւր տեղը գնայ. հէնց այն է, ուզում էր խանի ձեռն ու ոտը կապել ու այնպէս նրան հաւատի բերել, մէկ էլ տեսաւ, ընկերները

այս ու այն կողմից թռածի նման դալիս են ու դեռ կուշտը չը հասած ձայն տուին.

—Աղասի ջան, գլխիդ ճարը տես, քեզ մահ գալով հողինները թռաւ։ Ո՞ւր ես մնացել, անիրաւ Հասան խանը նոր զօրքի գլուխ է անցել, դալիս է Ալղարաքիլիսէն նորից պաշարի ու անհնազանդ բնակիչներին կոտորի։ Բորչալուի թուրքերը ռուս կապիտանին գլխից հանեցին. նրանց խօսքին լըսեց ու գնաց Գիւմրու բերդը պաշտպանելու։

Աղասին հպարտ ժպիտով պատասխանեց.

—Ի՞նչ Հասան խանից էք խօսում, միամիտներ, աշխարքում հօ տաս Հասան խան չըկայ, մի հատիկ է, այն էլ հորէս ոտիս տակին անքում է։

Այս լսելիս ամենի աչքերն էլ արիւնը բռնեց, դուրս հանեցին իրանց թրերը, որ վրայ վազեն արիւնարբուին կտոր կտոր անեն։ Աչապաշտ Աղասին առաջները կտրեց.

—Ո՛վ իմ գլուխը սիրում է, թող թուրը տեղը դնի. մեծ տղամարդութիւն չի դաշտում մի ուլ մորթելը։

Ընկերները գազազած դէմքով վրայ բերին.

—Տօ, խփիր, գլուխը ճընչխիր. օձին գուրգուրել պէտք Է՞, դրա շունչը սատանէն տանի, դրա գլխին քար ընկնի։ Մեր ազգի տունը քանդողին ինչո՞ւ մի րոպէ ժամանակ պտի տալ, որ շունչ քաշի։

Աղասին չը կոտրուեց, դարձեալ թախանձեց ընկերներին.

—Ինձ սպանեցէք, խնդրում եմ՝ սրան ձեռ մի՛ք տալ, թողէք սրա մահը մի քանի մարդիկ էլ տեսնեն, որ սրտները հովանայ։

Այս խօսքի մէջն էին, որ բազմաթիւ ձիաւորների տուտը նրանց վրայ բացուեց։ Ընկերները յարձակուեցին, որ անօրէնի շունչը կտրացնեն, անփորձ Աղասին նրանց դէն արեց, կապկապած խանին քաշ տուեց մի քարափի գլուխ, ոչխարի պէս առաջը վէր դրեց, ընկերներին հրաման տուեց, որ ձիանը ձորը տանեն, հրացանները պատրաստ ձօրաքերանում սպասեն։ Ինքը մի քանի ոտ խանիցը հեռու կանգնած, կուրծքը քարափին դէմ տուած այնքան մնաց, որ ձիաւորների ծայրը մէկ հրացանի տարածութիւն եկաւ մօտեցաւ։ Աղասին բերանը բաց արեց.

—Խա՛ն, հրաման արա, որ Խլղարաքիլիսէն ազատեն, կեանքդ էլ ազատ է, թէ չէ հաւի պէս կը մորթեմ։ Մարդ ղրկիր, որ զօրքը ետ դառնայ, թէ չէ քարափից վէր կը գցեմ, հազար կըտոր կըլինես։ Կռիւ ունես, ·թշնամուդ հետ արա, խեղճ հայերը քեզ ի՞նչ են արել.

Խանի ցանկութիւնն էր, որ մի հնարով ազատուի. հազար պարսիկ կամ թուրք սպանէին, նրա ի՞նչ փոյթն էր։ Ջանը թանկ էր, իսկոյն հրամայեց, որ մի քանի ձիաւոր հանեն, զօրքը ետ քաշել տան, մինչև ինքն էլ գայ։

Այդ ձիաւորները դեռ կիսաճամբին էին, որ Աղասու սիրտը գնաց. կանգնած տեղից ճլորեց,

վէր ընկաւ։ Վէրքը կապելը չէր իմացել, կըտրուած տեղը մնացել էր թոյլ, արիւնը թեւերով գնացել, մարմինը բռնել էր։ Ջրատար ընկերները նրա բերանից դուրս եկած «մխի» վրայ իմացան, որ գլուխը փորձանք է եկել։ Շտապ վրայ հասան ու գտան քամակի վրայ ընկած, մղկըտալէ ձայն ձուն հանեցին։ Ձայնն ընկաւ ձիաւորների ականջը, լացի վրայ իսկոյն ետ դառան։ Նրանք դեռ չը մօտեցած Աղասին ուշքի եկաւ, աչքը բաց արեց ու թառանչ քաշելով նշան արեց, որ ձորը թափուեն։ Ընկերները հասկացան միտքը, ուսներին դրին նրան, ու իրանց թանկագին բեռով ներքեւ շտապեցին։ Մտան Անի քաղաքի աշտարակը։ Հինգը Աղասուն խտտած գետնի տակի ճամբով գետի ափը հանեցին. հինգը թաղուն այս կողմից, միւս հինգը այն կողմից անցկացան, որ սարից ձորից ձայն տան, հարայ հրոց գցեն. վերջին հինգը աշտարակի ծակերից քսանից աւել մարդ սպանեցին։

## ԺԸ.

Մէկ օր Աղասին տխուր նստած էր քարի վրայ ու անչափ կարօտ սիրտն առած մտածում էր, յանկարծ մի ծեր մարդ մօտեցաւ նրան։ Աղասին մտամոլոր նայեց. չըճանաչեց իսկոյն թէ ո՞վ է, վեր կացաւ տեղից, որ սիրտն ու հոգին այրող ցաւերը նրան աշկարա չանի։ Ծերունին վրայ ընկաւ նրան դրկեց. «Աղասի ջան» ասելով

վիրաւոր սրտով մնաց նրա կրծքին կպած։ Աղասին ուշքի գալով նոր ճանաչեց թէ ով է, ինքն էլ «Աւետիք ամի ջա՜ն» կանչելով, հօրեղբօր երեսը արտասուքով ողողեց ու համբուրելով կարօտն առաւ։

Աւետիքը երկու հարցուքարով էր բերել, որ սիրելի կորածին գտնի, իրան տայ։ Մէկ թուղթը մօր կողմից էր, միւսը նշանածի։ Մօր թղթի խօսքերը կարճառօտ այս է.

«Աղասի ջան, Աղասի. գլխովդ ման տամ, Աղասի։ Ինչի՞ չեմ այս րոպէիս կրակ դառնում, քեզ այրում. ինչի՞ լեզուս չի չորանում, աչքս խաւարում. ինչի՞ չեմ փոշի դառնում, որ քամու բերան ընկնելով, սարէսար, քարէքար թռչելով գամ ոտիդ տակին ցրուեմ, որ ման գալիս իմ երեսը կոխես. որտեղ նստես, իմ աչքը հանես. որտեղ քուն մտնես, ինձ վրայ գլուխդ դնես։ Մայրը կեանքիդ մեռնի, իմ թագաւոր, իմ տղա՜յ Աղասի։

Տնկած ծառերդ փուշ են դառել ինձ սպանում, պահած ծաղիկներդ կրակ են դառել ինձ այրում, խորովում. ման եկած տեղերդ աչքիս լուսը տէգի պէս ցցւում, սիրտս դուրս ճոթռում։ Ո՞ւր կորչեմ, որ ձայնս ոքմին չիմանայ, ո՞ւր դնամ, որ աչքս քո տեսած բաներն էլ չը տեսնի, միտքս քո խօսքերն էլ չը յիշի. Ջանս քարանայ, որ էլ անունդ չը տամ, սիրտս ջուր կտրի, որ քու սէրը չը զգամ, կեանքս փչանայ,

*օրս խաւարի, որ երկնքի տակին չասեմ՝ թէ ես էլ մայր եմ, ես էլ որդի բերի, ինձ էլ մէկ օր աչքալոյս տուին, ես էլ մէկ օր որդու, զաւակի արեւ ձայնը պէտք է ածէի։*

*Անունիդ մեռնեմ, Աղասի ջան, մօր ազիզ պահած՝ հօր աչքի լոյս, որդի ջա՛ն. ողջ աշխարքի գոված, Աստծու սիրեկան, մարդու դուրեկան. ջանս քեզ մատաղ, Աղասի ջան։ Մէկ հոգի ունէիր, հազար աղքատի սրտում. մէկ շունչ ունէիր, հազար հիւանդի բերնում. մէկ անուն ունէիր արարած աշխարքի միջում, երկու ձեռ ունէիր, մէկով ողորմութիւն էիր տալիս, մէկով աչք սրբում։ Արդե՞ք ո՞ւմ մի թթու խօսք ասիր, որ ինձ անիծեց. ո՞ւմ վրայ դուռ յետ արիր, որ ինձ վա՛յ տուեց. ո՞ւմ վէր ընկած տեսար անցկացար, որ մօրդ գլուխը լացեղաւ։*

*Աղասի ջա՛ն, Աղասի, երեսս ոտիդ տակը, Աղասի. ի՞նչ կը լինի շուաքդ գոնէ տեսնեմ, ետոյ աչքս խփեմ։ Հայրդ բանդում, ոտքերը շղթայած. Նազլուն՝ ուրասուն կինդ կիսակենդան մահի հետ է կռւում, հէնց մենակ ես եմ չոր գլուխս պահում, որ մէկ շունչդ քաշեմ։ Ոտդ ի՞նչպէս է քարերին բռնում, աչքդ ի՞նչպէս է քուն դալիս, որ մեր մեռնելը միտդ է դալիս։ Գլուխդ այդտեղ լուա՛, այստեղ չորացրու, թող մէկ ժամ լինի, թռի, ա՛րի մօրդ հողին պահ տուր, որ էլ մայր չունենաս, մայրդ քար դառնայ։ Նազլուն հետդ տար, նա գոնէ ապրի, քեզ մխիթարի։*

«Քո սրտախորով մայր»

Այս նամակի վրայ որդու սիրտը ցաւեց, մղկըտաց, բայց ձեռով այդ բոպէին ոչինչ չէր գալիս. քթից մուխ հանեց ու լռեց։ Իրիկնահովի մօտ երբ սիրտը քիչ հանդարտուել էր, ծոցից հանեց սիրելի Նազլուի թուղթը, որ տեսնի թէ նա ինչ վիճակի է։ Նրա մէջ էլ այս էր գրած.

«Իմ գլխի տէր Աղասի, եթէ որ սիրտս հանեմ, այս թղթի մէջ դնեմ, եթէ որ բաց անես ու հարիւր թուր միջումը ցցուած տեսնես. այն ժամին կիմանաս՝ թէ ջրատար Նազլուդ ինչ ցաւ է քաշում, ինչ օրումն է, իմ կեանքի թագաւոր Աղասի։ Ո՞ր սարերն են առաջդ կապել, ո՞ր գետերը ճամբէդ կտրում, ո՞ր ձեռն է թևիցդ բռնում ետ քաշում, ա՜յ իմ թագ ու պարծանք, որ այսպէս ինձ կրակում թողել ես, ինձ դժոխքը ղրկում, դու արքայութիւնը վայելում։ Աղասի ջա՛ն, Աղասի, արգեօք սիրտդ քար է դառել, արդեօք աչքդ ծաղիկ ու թուփ էլ չի տեսնում. արդեօք երեսդ մի անգամ երկնքին չես գցում, որ տեսնես թէ ինչ մրրած ամպեր են առաջիդ կանգնած, ինչ կրակ է վերևից վէր թափում։ Չե՞ս իմանում միթէ, ա՛նիրաւ, թէ այս կրակն ու բոցը, այս ծուխն ու այս ամպը իմ բերնիցն են դուրս գալիս, իմ սիրտն է քուլայ քուլայ իրանից դուրս հանում, վերևը աստղերը խաւարեցնում, ներքև սար ու ձոր պապանձեցնում։

Գերեզմանի ափին կանգնել քեզ եմ կանչում, Աղասի ջա՛ն, ձեռս ու կուրծքս բաց եմ

*սրել, քեզ եմ կարօտ, սրևիդ մատաղ, հազար անգամ հրեշտակիս ոտն եմ սրել, ետ դարձրել, որ մի անգամ էլ ձայնդ լսեմ այս խլացած ականջովս, մէկ էլ երեսդ տեսնեմ այս խաւարած աչքովս։ Աղասի ջա՜ն, բա սիրտդ այնպէս մեռել փէտացել է, որ էլ ինձ չես սիրում։ Ա՜խ, ինչ անեմ, ինչ ասեմ, սիրտս լիքն է, ձայնս կարճ, տեղդ հեռու է, ճամբէքը արիւնկեր մարդկանցով լիք, ով մեր վշտին մի ճար կանի։*

Քեզ ու քու սիրուն կարօտ Նազլուդ։

*Էլ չեմ ասում, թէ այս նամակները կարդալուց ետը Աղասու սիրտը ինչ տեսակ դառաւ. ինքներդ իմացէք։ Քաջ ընկերները թղթերի բովանդակութիւնը լսեցին թէ չէ, խօսք կապեցին, որ գլխները մահու տան, ինչպէս լինի՝ գնան Աղասու մօրն ու կնկանը ծածուկ փախցնեն, բերեն։ Այդ բանը Աղասին տեղեկանալով ասեց.*

*—Շնորհակալ եմ, որ իմ սիրու համար ուզում էք ձեզ կրակի մէջ գցել, բայց քիչ էլ համբերեցէք, այս քանի խառն օրերն էլ անցկենան, տեսնենք ազգի ցաւերն ինչ կերպ են ընդունում. երկու հոգու ազատելը ամեն ժամանակ էլ հեշտ է։*

*Հօրեղբօրը մխիթարելով ճամբու դրեց, որ գնայ տանեցոց միամտացնի, մինչև ինքը նրանց հասնի։*

---

## ԺԹ.

Սրանից ետը Աղասու պատմութիւնը կարճ է. հիմի դէպքերն են, որ իրար ետնից գալիս են։

1826 Թ. ամառը հայ աշխարհքը խիստ նեղութեան ու աւերման մէջ էր. զզլբաշի սատը բանում էր, Թրի ծայրը շատ հեռու էր հասել. մէկ կողմից Գեանջան ու Ղարաբաղն էր ոտնատակ տուել, միւս կողմից Փամբակն ու Շօրագեալը։ Ռուս մեծաւորը անճարացած հրամայեց, որ հայ ժողովուրդը Փամբակից ու Շորագեալից քոչի, գնայ Լոռու ձորը, իւր գլուխը պրծացնի։ Ռուս կառավարութիւնը այնքան զօրք չունէր, որ պաշտպանէր, անզէն հայ ժողովրդի վիճակը ողբալի էր. չորս բոլոր ահ ու մահ էր. մէկի եղբայրն էր անհետանում, երկրորդի հայրը, երրորդի որդիքը։ Ղարաքիլիսէն, ուր ռուս մեծաւորն էր կենում, դառել էր սգատուն. անօրէն պարսիկներն ու Թուրքերը սարից, ձորից օրը ճաշին յարձակւում էին տաւար, ապրանք խլում, մարդկանց գերելով սպանում։ Ոչ ցերեկը հանգիստ կար, ոչ գիշերը քուն։ Յանկարծ մի օր էլ տեսան, Նաղի խանը անթիւ Թարաքեամա ձիաւորներով Փամբակի ձորը խուժեց, վրայ տուեց, Ղշլաղ գիւղը այրեց, ծուխը ամեն կողմից երկինք հանեց ու Թափն արեց Ղարաքիլիսի վրայ գալու։ Ուղիղ է, հայ ժողովուրդը սարսափի մէջ էր. անտառից հրացանի ձայն լսելիս իրար գլխով

էր դիպչում, բայց սիրտ չէր անում քաղցր ծննդավայրը թողել, հեռանալ։ Մտածում էր. եթէ քոչեմ Լոռի, պարսկի սրից կազատուեմ, բայց չէ՞ որ դրա փոխարէն ընկնելու եմ սովի բերանը։

Վերջը տեսաւ որ միակ հնարը քոչելն է, պէտք է տեղից ժաժ գայ։ Մեծ ու փոքր լալով համբուրեցին իրանց սիրելիների գերեզմանները, «մնաս բարով» ասին իրանց հողին ու ջրին և ռուս զինուորների հետ Դիվալ սարի միւս երեսն անցկացան։

Նրանք հեռացան թէ չէ, Նաղի խանը իւր զօրքով մտաւ Ղարաքիլիսէն ու կրակի բերան տուեց։

Քոչւորը անհամբարք էր. Ջալալօղլին հեղեղելով անցկացաւ, մրջիմի պէս փռուեց սարերի, ձորերի երեսով. ոչ հաց կար, ոչ օթևան։ Ով բարեկամ կամ ծանօթ ունէր այդ կողմերը, ձորն ի վէր գնաց։ Լոռու դեռ աջ ու ձախ ափերը, այս գլխից այն գլուխը լիքն էր ժողովրդով։ Անտառում, քարափներում «կացարաններ» շինեցին, ընտանիքները մի կերպ տեղաւորեցին։ Հաց ճարել չէր լինում, ցորենի կողը դառել էր եօթ, ութ ռուբլի. ճարահատած սարերի վրայի խոտ ու բանջարով էին կերակրւում։ Բայց մանր երեխէքը չէին կառավարւում դրանով. այդպիսիների ծնողները, եղբայրները թաղուն խումբ-խումբ գնում էին Փամբակ իրանց տներից պաշար բերելու. ճամբին որը գերի էր ընկնում պարսկի

ձեռը, որը կռուելով դլուխը թշնամուն զոհ տուալիս։ Այն քոչւորները, որ չէին ուզում սովամահ լինեն, անցնում էին Վրաստանի հողը։

Աքաս-միրզէն Ղարախաչի լեռների կողմից հետն ընկեր ունենալով վրաց Ալէքսանդր թագաւորազին առաջ էր գնում դէպի Թիֆլիզ։ Հասան խանն էլ հետները միացաւ. աւերելով, ահ ու սարսափ տարածելով մօտենում էին Խրամ գետին։ Շատ դիւղօրայք դադարկուելով թափուեցին Թիֆլիզու մօտերքը. Ծիրանաւորի ձորը, Թելեթի լեռնաշղթան անհամար ժողովուրդ էին պարտակում, պահում։ Քաղաքում ժամէժամ սպասում էին թէ որտեղ որ է, Աղա Մամադ խանի կրակը գլխներին կը թափուի։ Աչքները 1795 թ. արհաւիրքներից խիստ վախեցած էր։

Այս անչափ նեղութիւնը ժողովրդի սրտի համար կասեա փորձաքար էր. վառել էր ու ամենին շինել վրէժխնդրութեան անօթ։ Դրա գլխաւոր հերոսը Աշտարակցի Ներսէս եպիսկոպոսն էր, որ խաչը ձեռին եկեղեցում թէ հրապարակում քարոզում էր, որ քաջ լինեն. զօրք էր կազմում հայերից, որ գնան իրանց ազգի համար կռուեն, արիւն թափեն։ Շամշադնեցի Գրիգոր սրբազանը հօ Երմոլովի խնդրանքով հոգեորականի զգեստը թողած չերքէզի շոր էր հագել, զէնք ու զրահ կապել, Թիֆլիզի, Ղազախի, Բորչալուի կողմերի հայ զօրքերին առաջնորդում էր, ամենին իւր օրինակով քաջութեան հոգի ներշնչում։

## Ի.

Այդ ժամանակները ղզլբաշի թև առնելու, ամեն տեղ աներկիւղ ներս պրծնելու պատճառը այն էր, որ իշխան Մագաթօվը, քաջայաղթ հայ զօրապետը հիւանդ էր. գնացել էր Պետիգորսկի բժշկուելու. ոչ ով չկար նրա տեղը բռնող ու պարսիկներին նրա պէս սարսափեցնող։ Երբ իմացաւ թէ Թիֆլիզը ինչ դրութեան մէջ է, սիրտը չը համբերեց, կէս-հիւանդ վերկացաւ ձի նստեց ու Կովկաս լեռների վրայով շտապ հասաւ ու անակնկալ լոյս ընկնելով Թիֆլիզու ներքև Սնըղ-քէօրփու կշտին. մի ձայն հանելով՝ դադրած, սրտակոտր եղած ռուս զօրքին հոգի ներշնչեց, կենդանութիւն տուեց ու իմանալով, որ ղըգըլբաշները Գեանջայի գաւառն են թափուել, զօրքի գլուխն անցաւ ու այդ գիշերն ևեթ հասաւ Շամքորայ դաշտը։ Մէնակ նրա անունը լսելով պարսիկները սրտաթափ եղան։ Էլ չընայեց ղզըլբաշների շատութեանը յարձակուեց թշնամու վըրայ, գնդակների կարկտի տակ անցկացաւ Շամքոր գետը և արիւնըրդուշ անելով հալածեց։ Նրա հետ էր Գրիգոր եպիսկոպոսը, որ խորհուրդ տուեց գիշերը այստեղ հանգստանալ ու առաւօտը միայն տեղից շարժուել։ Զօրապետը լուսածէգին կարգադրութիւններ արեց, բանակի շուրջը պտտեց, դիտակը ձեռին սարերի գլխներին նայեց, որ տեսնի արդեօք թշնամի չի երևում։ Իւմ

ունեցած զօրքը քիչ էր. Պասկևիչի կողմից նոր զօրաբաժնի էր սպասում։ Զինուորները առաւօտեան աղօթքն արին առանց իմանալու թէ այսօր ո՛ր կողմն են գնալու։ Բանակը պտտելով նորից մտաւ վրանը, գրագրին թելադրեց մի քանի բաներ Թուրքերին խաբելու համար. «այս ինչ գեներալը այս ինչ տեղից, այս ինչը այն ինչ տեղից անթիւ զօրքով գալիս են շտապով, որ ղզլբաշի գլուխը ջարդեն»։ Այս միջոցին ձայն ձուն բարձրացաւ զօրքի մէջ. մի ձիաւոր վռազ քշում էր. պահապան էին կանչում որ իմանայ թէ ո՞վ է։ Ամեն կողմից հրացան բարձրացրին. եկողը չէր կանգնում. «քրիստեա՛ն», «արմեա՛ն» գոռալով բանակի մէջ էր մտնում։ Շտապում էր Մադաթօվի վրանի կուշտը. հեռուից էր այդ ճանաչել, ձին դէնն էր քշում. շէմքը հասնելով շնչասպառ ձիուց իջաւ, տէգը կտրիճի պէս գետնում ցցեց ու զօրապետի վրանն ընկաւ։ Մի քանի րոպէ եկողի լեզուն խօսք չէր բռնում, վերջապէս ուշքը հաւաքելով ձայն հանեց.

—Ի՛շխան, պատրաստութիւնդ տես, ղզլբաշները շատ կատաղել են քու դէմ, միտքներն այն է, որ այսօր կամ գիշերս գան վրէժ առնելու։

—Ո՞վ ես, ո՞րտեղից ես գալիս, հարցրեց զօրապետը հայերէն։

—Ես քանաքեռցի եմ, անունս Աղասի, հինգ տարի է քսան երեսուն ձիաւորով անթիւ Թըշնամու հոգին հանելով, այստեղ այնտեղ կոտորե-

լով ուզում էի լիուլի վրէժ հանեմ, չըյաջողուեց։ Ես քու տնից Խաչէն էի գնացել. երկու օր առաջ Թարթար գետի ափով անցկենալիս թշնամու աչքով ընկայ. բանակից հարիւրաւոր հոգիք տանէս ընկան, ընկերներիս մէկ երկուսին բռնեցին, միւսները սար ու ձոր ընկան։ Ես հազար գնդակի տակից անփաս, ողջ առողջ պրծայ։ Քու անունը վաղուց էի լսել. մի կերպ ուզում էի ռուսի հողն անցկենամ, քու ձեռի տակ ծառայեմ, չէր յաջողւում։ Ինչ ծառայութիւն ուզում ես՝ այժմ տուր։ Օսմանցուի հողում փաշայութիւն են խոստացել, չեմ յօժարուել. քրդերն ուզում էին ինձ իրանց գլխաւոր շինեն։ Բայազէտի, Ղարսի ժողովրդին քանի անգամ ղզլբաշների ձեռից ազատել եմ. սար ու ձոր չի մնացել, ամենն էլ ոտիս տակ եմ տուել, մտադրութիւնս էր Անի քաղաքը կրկին շէն դցել, բայց վախկոտ հայերը, մ՛խ, չուզեցին, չընդունեցին խնդիրս։ Ինքս վրճռեցի ու մնացի Անու աւերակների մէջ։ Նրա մօտերքում էր, որ Աստուած Հասան խանին ձեռս դցեց, ես ջահելութիւն արի, իսկոյն հողին չը հանեցի։ Էլի յոյս ունէի, որ մէկ էլ ձեռս դցեմ, չեղաւ, Աստուած գլխիս բարկացաւ։ Հիմի եկել եմ քու ոտը, ինչ հրաման ուզում ես, տուր. մէկ գլուխ ունեմ, քրիստոնեայ թագաւորին մատաղ լինի. սիայն սրտով մխիթարուեմ, որ իմ սիրուն աշխարքը անօրէնի ձեռից ազատուել է։ Ղզլբաշը յաւ գիտէ, որ վաղ ուշ ռուսները Երևանի նա-

հանդին տիրապետելու են, հիմիկուց ժողովրդին ուժով քոչեցնում են, բնակիչների ծայրը Թաւրիզ է հասել։ Ես մէկ ծեր հայր ունեմ. քանի տարի է բանդում. պառաւ մայրս քոչելիս ճամբին հոգին տուել է։ Մէկ նշանած ունեմ, նրա պատճառի ողջ ամառը տանջուել եմ, հազիւ հնար եմ գտել, հազար սրի ու կրակի միջից անցնելով նրա մօտ հասնել ու Փամբակ փախցնել։ Այժմ ուրիշ բան չեմ ուզում, միայն քու ձեռի տակ ծառայել ու քու զօրքի հետ Երևան մտնել. սրտիս փափագն է որ հօրս Երևանի բանդից հանեմ, մեր ազգն ու հաւատը անօրէնի ձեռից ազատ տեսնեմ. Նրանից ետը ինչ ցաւ ուզում է, թող ինձ դիպչի։

Քաջ զօրապետը ձեռը Ազատու ուսին դրած երկար նայում էր նրա պարթև հասակին, պայծառ երեսհարքին ու հիանում.

—Շատ լաւ, ռաշիդ տղայ, խօսեց զօրապետը, հէնց քեզպէսներն են ինձ հարկաւոր. սրտիդ խղձը կատարելով ընդունում եմ իմ մօտ ծառայութեան ու քեզ այսօրուանից տալիս եմ օֆիցերի աստիճան։ Դադրած ես, դու քիչ այստեղ հանգստացիր, ես մի քանի րոպէ դուրս գամ, գալիս եմ։

Մադաթովը խօսեց Պասկևիչի կողմից եկած մարդու հետ, որ վրանի առաջ սպասում էր ու իսկոյն հրաման տուեց բանակի մեծաւորներին, որ առանց ուշանալու պատրաստուեն Ղազախու

ձորով ճամբա կտրելու դէպի Դիլիճան։ Որոշումն էր՝ այս ու այնտեղ պարսիկ փախստական զօրքերին վրայ տալով, ջարդելով հասնել Արարատեան աշխարհը։

## ԻԱ.

Պասկևիչը, որ Երմոլովի տեղ նոր էր նշանակուել, Ներսէս սրբազանի օգնութեամբ արդէն հայ երկրի մեծ մասը ռուսի ձեռն էր գցել։ Ներսէսի անունն լսող հայը ռուս զօրքի առաջ դուռն էլ էր բաց անում, հացի ամբարն էլ։ Էջմիածին, Սարդարաբաթ առնուել, Երևանն էր միայն իւր անճար գլուխը դէմ տուել ու ետին շունչն ընկած՝ ուզում էր մի քանի օր էլ հոգևարքը երկարացնի։

Սարդարն ու Շահզադէն վաղուց էին քաղան քը ծածուկ թողել և Իրան աշխարհ փախել։ Հասանխանն էր մնացել մենակ, որ իւր արած չարութեան պատուհասն առնի. ինչքան լեզուի ու ձեռի շնորք ունէր, բանացրեց, ժողովրդին սիրտ տուեց, որ առանց շփոթուելու դիմագրեն. ռուսին անձնատուր չլինեն։

Քաղաքը ամեն կողմից զօրքով ու թնդանօթներով պաշարուած էր, երբ ղրկուած պատգամաւորը ետ եկաւ, թէ Հասան խանը չի ուզում անձնատուր լինել, հրաման արձակուեց ռմբակոծել։ Յուլիս ամսի 25-ն էր. Երևանի բերդը ծխում կորաւ. երկնքի կրակը մի կողմից էր

թափում խեղճ բնակիչների գլխին, թնդանօթի
ու հրացանի գնդակները միւս կողմից։ Հինգ օր
ու գիշեր թնդանօթաձգութիւնը և պատերազմը
շարունակւում էր, սար ու ձոր նրանց ձեռից
դղրդում էին։ Երևանի բերդը ձէթը հատած
պատրուգի պէս մէկ ժամ ճրթճրթում էր, կրկին
հանգչում, խաւարում. այնքան թնդանօթի ռումբ
էր դիպել գլխին ու կրծքին, խարխուլել, հոգին
բերանն էր եկել։ Հինգ օրից ետ ժողովուրդը
տեսաւ, որ խանն անզօր է, ընդդիմադրելը ան-
խորհուրդ է, իւր միջի մեծամեծներից մի քանի
հոգի ընտրեց. դրանք դուրս եկան բերդի աշտա-
րակների գլուխը ու բանալիները ձեռներին բռ-
նած ցոյց տուին, որ անձնատուր են լինում։

Իշխան Պասկևիչը իւր գեներալներով, Ներ-
սէս Աշտարակցին իւր մարդկանցով մտան բեր-
դը, որ ընդունեն պարսիկների ձեռից ու հայոց
աշխարքի ազատութեան տօնը կատարեն։

Զօրքի ծայրը բերդը մտաւ թէ չէ, հազար
դուռ ու պատուհանից՝ կարօտ սրտերի լացն ու
արտասուքը իրար խառնուեցին.

Աշխարքը իրարով էր դիպել, բերդի մէջը
թէ չորս կողմը ասեղ գցելու տեղ չը կար. աչք
էր որ խնդում էր. ազգական ու բարեկամներ էին,
որ իրար փաթաթուած մնացել էին ջուր կտրած.
բերդի դռներն ու փողոցները դղրդում էին ոտի
ու ցնծումի ձայներից։ Ռուս պահապանները շու-
տով ամեն տեղ բռնեցին։ Պաշարուած ժողովուր-

դը կամաց կամաց բերդից քաշւում էր լոյս աշխարք, միայն Հասան խանի անողորմ ձեռով կուրացած, կոնդացած ոքմինները չէին կարում դուրս գալ. նրանք բռնել էին բերդի դուռը, որ ձայնի վրայ իրանց ազգականներին ճանաչեն, իրանց սև օրին հովութիւն գտնեն։

ԻԲ.

Այդ միջոցին Ներսէս սրբազանը Երևանցի Սահակ աղի ձեռից բռնած շրջում էր աշտարակները ու բերդի միւս մասերը աչք ածում։ Այդ բարձր տեղից Արարատեան դաշտը այնպէս էր երևում՝ ինչպէս մի թերթ փռած թուղթ. իւր հոգեվից աչքը թանձր ունքերի տակից Զանգուի վրայով զցեց դէպի մշուշում թաղուած Մասիսը ու դէպի անծայր դաշտավայրը և ցնծուն երեսով գոչեց.

—Սահակ աղա, տեսնում ես. այս երկիրը Հայաստանի հողն է, որ հազար տարուց ի վեր դառել էր գողի ու աւազակի բնակարան. սա այն հողն է, ուր որ դրախտն էր եդեմական, ուր Աստուած բոլոր աշխարքը ջրհեղեղով կործանելով հայոց Մասիս սարը արժան տեսաւ, որ Նոյեան տապանը նստի։ Սա այն աշխարքն է, ուր անպարտելին Հայկ անաստուած Բէլին յաղթեց. այն հողն է, ուր Աստծու որդին երևաց ու մեր սուրբ Լուսաւորչին իջման տեղի կերպը ցոյց տուեց։ Այն աշխարքն է, որ Մամիկոնեան Վարդանի պէս զարմ ծնեց։ Այն օրհնեալ հողն է, ուր

Ասորիք, Պարսիկք, Հոնք, Ալանացիք, Մակեդոնացիք, Հռովմայեցիք, Արաբք, Օսմանցիք ջրհեղեղի պէս վրայ եկան, մեր հարեան հարիւրաւոր ազգեր ու աշխարքներ ոտնակոխ արին, հողի հետ հաւասարեցրին. որ այսօր ոչ նրանց շունչը կայ, ոչ անունը. բայց անյաղթելի Հայկի որդիքը իրանց թագաւորութիւնը, փառքը կորցնելուց ետ երբ տեսան, որ չեն կարող աշխարհակործան ջրհեղեղին դիմանալ, աչքները երկինք գցեցին, հազար թրի տակից, հազար կրակի միջից՝ սիրտ սրտի տուած մինչև այսօր էլ իրանց գլուխը, իրանց սուրբ հաւատը այն վեհանձնութիւնով պահպանեցին, որի օրինակը աշխարքում ոչ եղել է, ոչ էլ կը լինի։ Այս անօրինակ ազգն է, որ այս վերջին ժամանակ շունչը բերանը հասած կուռում էր ու լիայոյս սպասում ռուսաց հզօր արծուի գալուն, որ նրա թևի տակ մտնի, կուշտ անի։ Այս փափագն արդէն կատարուեց։ Ուրիշ փափագ էլ ունիմ այս իմ այրուած կրծքի տակ. Աստուած մի առ ժամանակ էլ ինձ կեանք տայ, մեր խեղճ ցրուած ազգը կրկին իւր երկիրը ժողովեմ, ինչպէս թռխսըկանը իւր ճուտերին. այդ բանն էլ կարօտ աչքս տեսնի, նրանից ետոյ, մեխ, թող հողի տակ մտնեմ։

—Ամենակալ Աստուածը սրտիդ խորհուրդը կատարի, Սրբազան, վրայ բերեց բարեսիրտ Սահակ աղէն ու մի րոպէ լռելուց ետը խօսքը շարունակեց.—պատմութիւնից ես էլ քիչ շատ տե-

դեկութիւն ունեմ, բայց իմ զարմանքը նրա վրայ է գալիս, թէ ինչ պինդ ճակատ է ունեցել մեր ազգը, որ Նոյեան տապանի ժամանակից՝ էլ հեթանոս, էլ կռապաշտ, էլ մահմեդական, էլ անօրէն ազգ չի մնացել, ամենի հետ կռուաբան է ունեցել ու մինչև օրս շունչը վրէն պահել։ Այդքան կրակների առաջ ո՞նց կարաց մի մանուշակ դիմանալ կամ այդքան կայծակ ու կարկտին ո՞նց կարաց մի հասկ տոկալ, համբերել, ինչպէս մեր ազգն է անթիւ թշնամիներին համբերել ու դիմացել։ Հայոց ազգի ջանին մեռնեմ, այդ ո՞ր կաթն է նա ծծել, այդ ո՞ր ձեռն է նրան գրկել, այն ո՞ր բերանն է նրան օրհնել, որ նա այդ հոգին, այդ սիրտը իւր միջումն ունենայ, այդ հրաշքը աշխարքին ցոյց տայ։

Մտածմունքների մէջ խորասուզուած, գաւազանի վրայ թինկ տուած՝ Զանգուի ալիքներին էր նայում Ներսէս սրբազանը, երբ մէկ ողբալի ձայն լսուեց հէնց այն աշտարակի տակից, որի վրայ նրանք կանգնած էին. «Հայր սրբազան, գլխիդ մատաղ, հասիր, մէկ հայ օֆիցեր սպանեցին»։

## ԻԳ.

Սահակ աղի հետ Սրբազանը շտապով իջաւ, որ տեսնի ո՞վ է։

Մեր քաջ Աղասին հինգ տարի սար ու ձոր չափչփելով՝ դազանի ու թշնամու գլուխ չըտուեց. Մադաթովի ձեռի տակ զարմանալի քաջութիւններ

ցոյց տալուց ետ Կրասովսկի զօրավարի հետ հասաւ իւր կարօտ հայրենիքը, որ իւր ջրատար հօրը տեսնի։ Բերդը առնուեց թէ չէ, էլ համբերութիւն չունեցաւ որ պարսիկների ոտքը քիչ խաղաղուի. մայրը կորցրած գառան պէս ընկաւ աշտարակէ աշտարակ ու հօր անունը հարցրեց։ Մէկ երեւանցի առաջ եկաւ, տարաւ այն աշտարակի մուտքի մօտ, ուր նրա տարաբաղդ հայրը մի քանի հայերի հետ բռնուած էր։ Բայց անիրաւ պարսիկները վաղուց էին իմացել զօրքի հետ նրա գալը. ովքեր նրա դէմ ոխ ունէին, տաս հոգու չափ գնացել էին աշտարակում թագնուել։ Երբ Աղասին ուսի ապելատով աշտարակի դռանն երեւաց, պահապան զինուորը մի կողմ կանգնեց, պատիւ տուեց։ Ցնծուն հրեշտակի պէս քաջարի որդին ներս ընկաւ հօր արգելարանը։ Ներսում գտնուողները գեռ չէին իմացել բերդի առումը. կարծել էին թէ այդ մի քանի թուրքերը թուր ու դաշոյն հանած եկել են, որ իրանց տանեն սուրը քաշելու. վախենում էին հարցնեն թէ ովքեր էք։ Աղասին որ ներս եկաւ, հէնց իմացան, թէ սա էլ եկել է այդ անօրէններին բռնել տայ։ Խեղճ հօր դարգակ շունչն էր մնացել բերնում, աչքի լոյսը վաղուց էր հատել, ոտն ու ձեռը չորացել։ Հոգին չէր ուզում նրանից ձեռ վերցնել, շատ անգամ նուաղած ձայնով մզկտում էր. «բաս ո՞ւր է, թող մի տեսնեմ, Աղա՛սի, ո՛րդի, հո՛գի»։ Որդին չէր գալիս։ Այսօր երբ լալով կրկնեց ու ձեռնե-

րը տարածելով կանչեց.

—Աղասի ջա՛ն, դէ՛ արի է, որդի ջա՛ն, ո՞ւր ես, դէ արի է։

Հէնց այս ազերսալի խօսքի վրայ դռները ճռռացին ու սիրելի որդին տանջուած հօր ձայնին պատասխանեց.

—Գալիս եմ, ափու ջան, գլխովդ ման տամ. դեռ ողջ եմ, ալիքէդ մատաղ։

Այս ասելն ու խելքը թռցրածի պէս հօր գիրկըն ընկնելը մէկ արեց։ Ժամանակ չը կորցրին թուրքերն էլ. մի կողմում թուր ու դաշոյն հանած սպասում էին. իրանց գժոխային մտադրութիւնը կատարելու համար վրայ վազեցին։ Հայրը որդու ձայնը լսեց թէ չէ, ցնծումից, երջանկութիւնից ուշագնայ եղաւ. ջրատար որդին միջոց չունեցաւ հօրը ետ բերի կամ մի ճար անի։ Ներս եղողները ձայն-ձուն հանեցին, դրսի պահապան զինուորը ներս վազեց, խշտով երեք թուրքի ծակծկելով սպանեց, միւսները իրանց զոհին թողին, փախան։ Երբ Սրբազանը ներս եկաւ, գտաւ Աղասուն արիւնաշաղաղ, հօր կրծքին ընկած. երկու դաշոյն սրտումը ցցուած, երեքը մէջքումը, ոտ ու ձեռ շատ տեղ վիրաւոր։

## ԻԴ.

Էգսի իրիկնադէմ ողջ Երևանը հաւաքուել էր բերդի չորս կողմը բռնել. Աղասու մարմինը տանելու էին թաղեն. զօրքը շարք շարք կանգ-

մուրազ Աղասու վրայ ազողը, սա իմ աղայ Մուսէն չի՞։ Ա՜յ իմ կորած որդի, սպիտակ մազերս քեզ փիանդազ, մադեամ դու էլ ես բերդում եղել, ես ողորմելիս անտեղեակ։ Վա՜յ իմ գլխիս, Թագաւոր որդի, այս ի՞նչ օրի եմ քեզ տեսնում։ Քանի տարի է քո տեսքին կարօտ, դարդակ յուսով ապրում եմ։ Արի չորացած ձեռներով քեզ խտտեմ, քու հոտից կշտանամ, իմ քաղցր, իմ անուանի որդի։

Այս ասելով կռացաւ, գիրկն առաւ տղին. հայր ու որդի ծնկաչոք իրար վրայ թեքուած համբուրեցին մէկմէկու ու մնացին իրար կրծքի թուլացած։

Վերջացաւ Աղասու պատմութիւնը։

Ձեզանից ով ուզենայ, կարող է այսօր էլ Աղասու, Մուսայի և նրանց հայրերի գերեզմանները Քանաքեռի եկեղեցու բակում փնտռել ու գտնել։



## ԲԱՑԱՏՐԵԼԻ ԲԱՌԵՐ

Աֆերիմ ասել—կեցցէ, քաջ ասել.
Ապելյատ—ուսադիր.
Բէյմուրազ—մուրազաչոր.
Գլդուր գլդուր—կայլակ կայլակ.
Դամ քաշել—քաղցր զրոյց անել.
Եարաբ—արդեօք.
Զառ ու ղումաշ—դիպակ, մետաքս,

Ջու անել—միասին ծոր բռնել.
Թարժած անել—զարթեցնել.
Լուլա—խողովակ.
Կող—հատիկի չափ, 20 գրվ.
Կուչուր անել—պատսպարուել.
Հարայ տալ—իմաց տալ.
Հարց ու բարով—նամակ.
Հարայ կանչել—օգնութիւն կանչել.
Ղարափափախ—տաճկի մի ցեղ.
Ղարաչի—գնչու.
Ճընչխել—ջարդել.
Ճլըմկոտալ—մէջքը, իրանը մարզել.
Մագեամ—միթէ.
Նամարդ—տմարդ, անազնիւ.
Նշխարք—նիւթ, ուտելիք.
Շփլթոց—շշուկ.
Ուղուր—ճանապարհ.
Ջարսաւ—սպիտակ ծածկոց
Ջախմախ—հրացանի կայծառ.
Պարզըկայ—լուսնեակ ցուրտ գիշեր.
Պոպող—սրուլիկ.
Ջիրիդ—ձիարշաւ.
Սանգար—պատնէշ.
Սաքու—հողէ նստարան.
Սուրայի բոյ—բարեկազմ հասակ.
Տուտ—ծայր.
Ցեք—կտրի առաջամաս.
Փալ բաց անել—բաղդի նայել.
Փիանդազ—ոտի տակի փռոց.
Փշտով—ատրճանակ.
Քէնդխուդա—գիւղի իշխան.
Օդա—զոմի առանձին մասը, ուր տախտեր ու բուխարի կան, գրուցարանի տեղ է ծառայում.

